ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ ՄԻԱՑԵ՛Ք







# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922թ.

5

ՄԱՅԻՍ • 1988

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՜ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



5
ՄԱՅԻՍ
1988 թ.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ
ՀԱՅԵՐԵՆ
ԵՎ
ՌՈՒՍԵՐԵՆ

## Բովանդակություն



ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ

*Խմբագրության հասցեն՝*
*375023, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2*

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 53—86—11
պատասխանատու քարտուղար՝ 52—99—22
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 52—99—34
գրական աշխատողներ՝ 52—66—77
53—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11





# ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Լ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ**

Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովի՝ մեր հեղափոխության 70-ամյակին նվիրված զեկուցման մեջ տրված է երկրի հերոսական մեծագործություններով ու դրամատիկական իրադարձություններով հագեցած պատմական ուղու համակողմանի վերլուծությունը: Հեղափոխական վերափոխումների անհրաժեշտությունը կազմում է Հոկտեմբերի և վերակառուցման ստրատեգիայի գաղափարների պատմական հաջորդայնության հիմնական բովանդակությունը:

Սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի վերակառուցման ու նրա սոցիալ-տնտեսական զարգացման արագացման ստրատեգիան պատասխանատու խնդիրներ է դնում հասարակական գիտությունների առջև: Վերակառուցման և արագացման բազմակողմանի խնդիրները, դրանց փոխկապակցված քաղաքական, տնտեսական, գիտատեխնիկական, սոցիալական, մշակութային-հոգևոր ու հոգեբանական ասպեկտները կարիք ունեն հետագա խոր և համապարփակ վերլուծության:

Ուշադրություն հրավիրելով այդ խնդիրների փոխադարձ կապի վրա՝ Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումում մեկ անգամ ևս շեշտեց. «Մեզ կենսականորեն անհրաժեշտ է սկզբունքային ճեղքում տեսական ճակատում՝ հիմնված հասարակական կյանքի փաստերի ամբողջության խիստ վերլուծության, մեր շարժման նպատակների ու հեռանկարների գիտական հիմնավորման վրա»:

Միանգամայն ակնհայտ է, որ ճեղքման անհրաժեշտությունը տեսական ճակատում թելադրվում է նրանով, որ անհատի պաշտամունքի, լճացման ու պահպանողականության ժամանակաշրջանում կատարվել էին շեղումներ մարքսիզմ-լենինիզմից, հաճախ մոռացության էր տրվում նրա հեղափոխական-ստեղծագործական բովանդակությունը:

Ստեղծվել էր այնպիսի իրադրություն, որի ժամանակ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում, որոշ հանգամանքների բերումով տեսությունից և հասարակագիտությունից դուրս էին մնացել կենդանի բանավեճն ու ստեղծագործական միտքը, իսկ ավտորիտար գնահատականներն ու դատողությունները դարձել էին անառարկելի ճշմարտություններ, որոնք ենթակա էին լոկ մեկնաբանման... Լենինյան դրույթները սոցիալիզմի մասին մեկնաբանվում էին հասարակացված, հաճախ ամլացվում էին դրանց տեսական խորությունն ու նշանակությունը:

Առկա էին թերևամիտ պատկերացումներ կոմունիզմի մասին, զանազան մարգարեություններ ու վերացական դատողություններ: Դա իր հերթին իջեցնում էր սոցիալիզմի պատմական նշանակությունը, թուլացնում սոցիալիստական գաղափարախոսության ներգործությունը...

---

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ԼՅՈՒԴՎԻԳ ՄՆԱՑԱԿԱՆԻ— ԵՊՀ-ի պրոռեկտոր, փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր:

Տեսության նկատմամբ նման վերաբերմունքը չէր կարող բացասաբար չանդրադառնալ, և իրոք անդրադարձավ հասարակական գիտությունների վրա, հասարակության մեջ նրանց ունեցած դերի վրա:

Իհարկե, դա չի նշանակում անտեսել մեր հասարակագիտության մեջ ձեռք բերված որոշակի նվաճումները: Հայտնի է, որ ՍՄԿԿ XX համագումարից հետո ձեռնարկվեցին գիտական լուրջ հետազոտություններ մեր կուսակցության և սոցիալիզմի շինարարության պատմության մասին, սոցիալիստական հասարակության զարգացման դիալեկտիկայի, տնտեսական մեխանիզմի կատարելագործման, հասարակության գիտական կառավարման, դեմոկրատիայի զարգացման ու բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարի, օրինականության ամրապնդման և այլ հրատապ պրոբլեմների վերաբերյալ: Սակայն գիտնականների հետազոտություններն ու հանձնարարականները մեծ մասամբ դուրս էին մնում ղեկավարման ու կառավարման մարմինների տեսադաշտից, իսկ հաճախ նաև անհիմն կերպով մերժվում:

Հասկանալի է, որ այդպիսի պայմաններում ընկնում էր հասարակագիտության սոցիալական վարկը, թեև դրա բարձրացման մասին քիչ չէր խոսվում և ընդունվում էին հատուկ որոշումներ: Այդ բանում դրսևորվում էր նաև խոսքի ու գործի անհամապատասխանությունը: Գաղտնիք չէ, օրինակ, որ անցյալում հասարակական գիտությունների դերի բարձրացումը բուհերում հիմնականում հանգեցվում էր դասաժամերի ավելացման, կուսակցության հերթական համագումարի ձևակերպումներով ուսումնական ծրագրերի ձևական համալրման և գրականության ցուցակի մեջ դրա նյութերի ավելացման, այլ կերպ ասած՝ կարծրացած դոգմատիկ ավանդույթի նոր շպարման (տե՛ս «Коммунист», 1987, № 5, стр. 78):

Վերակառուցման և արագացման խնդիրներին համապատասխան՝ հասարակական գիտությունների դերի իրական բարձրացման հիմնական ուղղությունները սահմանված են կուսակցության XXVII համագումարում, ՍՄԿԿ Կենտկոմի հետագա պլենումների որոշումներում, հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում: Կուսակցությունը սովետական հասարակագետներին կոչ արեց հաղթահարել սոցիալիզմի մարքս-լենինյան ըմբռնումից կատարված էական շեղումները, ապահովել նրա արագացած-համամասնական զարգացումը հօգուտ հասարակության և յուրաքանչյուր անհատի:

Կուսակցության «Ավելի շատ սոցիալիզմ» լոզունգը տեսության բնագավառում նշանակում է «ավելի շատ մարքսիզմ-լենինիզմ»: Այլ կերպ ասած, վերակառուցումը հասարակական գիտություններում նախ և առաջ նշանակում է ավելի մոտ Մարքսին, Էնգելսին և Լենինին: Ավելի մոտ, քանի որ ճշմարտության դասերը թելադրում են անկեղծորեն ընդունել այն, որ մարքսիզմ-լենինիզմի տառի ու ստեղծագործական ոգու նկատմամբ անթույլատրելիորեն կամայական վերաբերմունքի, ռեալ իրականության հրատապ պրոբլեմներից հասարակական գիտությունների խզվածության հետևանքով ավելի ու ավելի են սկսել գերիշխող դառնալ պահպանողականությունը, դոգմատիզմն ու սխոլաստիկան: Հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների համամիութենական խորհրդակցությունում Մ. Ս. Գորբաչովը հատուկ ուշադրություն հրավիրեց այն բանի վրա, որ «հասարակական գիտությունների դասավանդման դեռ գոյություն ունեցող դրվածքն ու ձևերը, մեթոդները ոչ պակաս չափով նպաստում են այն բանին, ինչ մենք անվանում ենք դոգմատիզմ և սխոլաստիկա»: Պլենումում նշվեց, որ «Չափազանց կարևոր է վերակառուցման պրոցեսում վերացնել հասարակական գիտությունների դասավանդման գործում հեռու գնացած շերտավորումը՝ միջառարկայական պատնեշները...»: Որպես այդ դրույթների զարգացում՝ հասարակական գիտությունների վիճակի ու դրանց վերակառուցման ուղիների վերլուծությունը տրված է Ա. Մ. Յակովլևի «Սովետական հասարակության որակապես նոր վիճակի հասնելը և հասարակական գիտությունները» հոդվածում (տե՛ս «Коммунист», 1987, № 8):

Ընդհանուր առմամբ կարելի է ասել, որ ՍՄԿԿ-ի առաջադրած «նոր մտածողու-
թյան» անհրաժեշտության գաղափարը ներքին և արտաքին քաղաքական պրոբլեմ-
ների վերլուծության ու լուծման գործում լրիվ չափով վերաբերում է հասարակագետ-
ների գիտամանկավարժական գործունեությանը: «Հասարակագետների ուշադրու-
ների վերլուծության ու լուծման գործում լրիվ չափով վերաբերում է հասարակագետ-
զարգացման, ՍՍՀՄ-ում, սոցիալիստական մյուս երկրներում նոր հասարակության
ստեղծման փորձի, սոցիալիզմի պայմաններում արտադրողական ուժերի և արտա-
դրական հարաբերությունների դիալեկտիկայի, նյութական ու հոգևոր ոլորտների,



կոմունիստական ֆորմացիայի ձևավորման օրինաչափությունների, դեպի նրա բարձրագույն փուլ աստիճանական առաջխաղացման ուղիների ու միջոցների ուսումնասիրման և բազմակողմանի վերլուծության վրա: Սոցիալիստական հասարակության օբյեկտիվ հակասությունների գիտական վերլուծությունը, դրանց լուծման հիմնավորված հանձնարարականների, տնտեսական ու սոցիալական հուսալի կանխատեսումների մշակումը զարգացման արդի փուլում հասարակական գիտությունների անհետաձգելի խնդիրն են:

Խոր ուսումնասիրման կարիք ունեն կոմունիստական, բանվորական, ազգային-ազատագրական շարժումներում, կապիտալիստական հասարակության մեջ տեղի ունեցող պրոցեսները: Համաշխարհային զարգացման ընթացքը մարդկության առջև համընդհանուր մասշտաբի քիչ հարցեր չի դնում: Գիտական միտքը պետք է ճիշտ պատասխան տա այդ հարցերին: Հասարակական գիտության կարևոր խնդիրը եղել և մնում է պայքարն ընդդեմ բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի և դոգմատիզմի» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 235—236):

ՍՄԿԿ ծրագրում ձևակերպված առավել ընդհանուր խնդիրները հասարակական գիտությունների բնագավառում կարող են հաջողությամբ լուծվել բոլոր հասարակագետների համատեղ ջանքերով միայն:

Սովետական հասարակագետների ուշադրությունը կենտրոնացվում է այն պրոբլեմների վրա, որոնք որոշում են վերակառուցման և արագացման ստրատեգիայի գլխավոր նպատակը. երկրի կենսագործունեության բոլոր կողմերի որակական նորացում, հասարակական կազմակերպման ժամանակակից ձևերի հաղորդում սոցիալիզմին, մեր կարգերի մարդասիրական բնույթի առավել լրիվ բացահայտում: Կուսակցության ծրագրային փաստաթղթերում շեշտվում է, որ այդ նպատակին հասնելու վճռական պայմանն է սոցիալիստական հասարակության առավելագույն դեմոկրատացումը, որի ժամանակ մարդն իրեն զգում է տեր և ստեղծող: Միայն դեմոկրատիայի միջոցով և դեմոկրատացման շնորհիվ է հնարավոր բուն վերակառուցումը: Մեծ Հոկտեմբերի 70-ամյակին նվիրված զեկուցման մեջ Մ. Ս. Գորբաչովը այդ կապակցությամբ ասաց. «Հասարակության դեմոկրատացումը վերակառուցման հոգին է, և թե՛ հենց վերակառուցման, թե՛, կարելի է առանց չափազանցության ասել, ամբողջությամբ վերցրած սոցիալիզմի ապագան կախված են նրանից, թե ինչպես այն կընթանա: Դա քաղաքականության մեջ և էկոնոմիկայում կատարվող վերափոխումների ամուր երաշխիքն է, որը բացառում է ամեն մի հետընթաց շարժում...»:

Վերակառուցման գլխավոր նպատակի ու նրա իրականացման մեխանիզմի գիտական բնութագիրը որոշում է սովետական հասարակագետների առաջնահերթ խնդիրներն այդ բնագավառում: Միանգամայն ակնհայտ է, որ անհրաժեշտ է մշտական ուշադրություն նվիրել սովետական հասարակության քաղաքական սիստեմի, դեմոկրատացման, ժողովրդի սոցիալիստական ինքնակառավարման զարգացման, աշխատավորական կոլեկտիվների ինքնուրույնության ընդլայնման, ղեկավար կադրերի ընտրովիության, անհատի ակտիվության ու պատասխանատվության, սոցիալական արդարության բարձրացման, տնտեսական ու սոցիալական զարգացման, կառավարման մեխանիզմի կատարելագործման և այլ պրոբլեմների խոր ուսումնասիրմանը: Վերոհիշյալ և այլ հրատապ պրոբլեմների տարբեր ասպեկտները մտցված են մեր համալսարանի հասարակական գիտությունների ամբիոնների հետազոտությունների թեմատիկայում: Դրանցից են՝ «Ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակությունը» կոմպլեքսային թեման, որի կատարմանը մասնակցում են հասարակական գիտությունների բոլոր ամբիոնները (գլխամասայինն է ՍՄԿԿ պատմության ամբիոնը), «Բաշխիչ հարաբերությունների կատարելագործումը և ժողովրդական բարեկեցության աճի հարցերը» (քաղաքատնտեսության ամբիոն), «Փիլիսոփայական փաստարկման ընդհանուր տեսությունը» (դիալեկտիկական մատերիալիզմի և տրամաբանության ամբիոն), «Հասարակական հարաբերությունների վերարտադրության սոցիալ-փիլիսոփայական պրոբլեմները» (պատմական մատերիալիզմի և բարոյագիտության ամբիոն), «Սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմը և կառավարումը» (գիտական կոմունիզմի ամբիոն), «Անհատի աթեիստական համոզվածության ձևավորումը» (գիտական աթեիզմի ամբիոն), «Բուրժուական փիլիսոփայության հետազոտության լենինյան սկզբունքները և արդիականությունը» (փիլիսոփայության պատմության ամբիոն), «Սոցիալիստական ապրելակերպի ուսումնասիրման մեթոդաբանական պրոբլեմները» (կիրառական սոցիոլոգիայի ամբիոն) և այլն:

մունքի լոկ առարկայական, կրկնորդումից և սխոլաստիկայից զերծ դասավանդումն է մարքսիզմ-լենինիզմի գիտական և զգայական գրավչության կարևոր երաշխիքը: Միայն այդ ուղիով մենք կկարողանանք հասնել այն բանին, որ մոտակա տարիներին սոցիոլոգիական ուսումնասիրությունները ցույց տան ուսանողների ոչ թե ձևական (ինչպես այժմ է), այլ բարձր շահագրգիռ վերաբերմունքը հասարակական գիտություններին, և ընթերցողների լայն խավերի նույնպիսի վերաբերմունքը սովետական հասարակագետների մենագրությունների, բրոշյուրների ու հոդվածների նկատմամբ:

Հասարակական գիտությունների ամբիոնների վարիչների 1986 թվականի հոկտեմբերյան համամիութենական խորհրդակցությունից հետո մի շարք կոնկրետ միջոցներ են իրականացվել բուհերում և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում հասարակագիտական առարկաների դասավանդումը բարելավելու համար: Մշակվել են դասընթացների նոր ծրագրեր, ծավալվել է նոր դասագրքերի ստեղծման աշխատանքը: Ընդլայնվել են հասարակագիտական ամբիոնների իրավունքները ուսումնական պրոցեսի վերակառուցման գործում:

«Միջնակարգ ու բարձրագույն դպրոցի վերակառուցման ընթացքի և դրա իրականացման բնագավառում կուսակցության խնդիրների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի 1988 թվականի հունվարյան պլենումի ընդունած որոշման մեջ ասված է. «Հասարակագիտական առարկաների դասավանդման ամբողջ պրակտիկան պետք է մշակի ինքնուրույն դատողությունների ընդունակություն, սովորողներին օգնի գիտակցաբար յուրացնելու կյանքի դիալեկտիկան արտացոլող գիտական հետևությունները: Երիտասարդության մեջ դաստիարակել բարձր գաղափարայնություն, գիտական-մատերիալիստական հայացքներ, հասարակական երևույթները հստակ դասակարգային դիրքերից գնահատելու կարողություն»:

Հեղափոխական վերակառուցման գաղափարներն առանձնահատուկ երախտագիտությամբ ընկալեցին սովետական հասարակագետները, քանի որ դրանք արտացոլում են նրանց բազմամյա իղձերն ու խոհերը: Եվ դա հասկանալի է, քանի որ հետլենինյան ժամանակաշրջանում կուսակցությունն առաջին անգամ է ստեղծում ոչ թե լոկ խոսքային, այլ գործարար ստեղծագործական աշխատանքի իրադրություն հասարակագիտության մեջ, ամբողջ գաղափարախոսական աշխատանքում: Մենք հնարավորություն ունենք համարձակ հետազոտություններ կատարելու սոցիալական կյանքի բարդ պրոցեսների մասին՝ նրանց բոլոր հակասություններով հանդերձ, հնարավորություն ունենք հասարակական գիտությունների դասավանդումը դուրս բերելու դոգմատիզմի և սխոլաստիկայի շրջանակներից, որին և մեզ կոչ է անում կուսակցությունը:

---

# ԱՆՀԱՏԻ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ ՍՄԿԿ-Ի ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Գ. ՄԵԼՔՈՒՄՅԱՆ**

ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՀԱՂԹԱՆԱԿԸ և սոցիալիստական ֆորմացիայի ստեղծումը համամարդկային նշանակություն ունեցող իրադարձություններ եղան և նոր հեռանկարներ բացեցին հասարակության և անհատի ներդաշնակ զարգացման համար: ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում նշվեց. «Համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ աշխատավոր մարդը, նրա շահերն ու կարիքները դրվեցին պետության քաղաքականության կենտրոնում»: ՍՄԿԿ-ի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հսկայական հաջողությունների հասավ քաղաքական, տնտեսական, սոցիալական և հոգևոր զարգացման բնագավառում: Սակայն, ինչպես ասվեց պլենումում, որոշակի փուլում երկիրն սկսեց կորցնել շարժման տեմպերը, սկսել էին կուտակվել դժվարություններ և չլուծված պրոբլեմներ, ի հայտ էին եկել լճացման և սոցիալիզմին խորթ այլ երևույթներ, որոնք լրջորեն անդրադառնում էին էկոնոմիկայի, սոցիալական և հոգևոր ոլորտների վրա: Մեր հասարակության մեջ առաջացել էր մի յուրատեսակ արգելակման մեխանիզմ: Եվ այդ ամենը այն պայմաններում, երբ գիտատեխնիկական հեղափոխությունը բացել էր տնտեսական և սոցիալական առաջադիմության նոր հեռանկարներ: «Ի հայտ եկան,— ինչպես գրում է Մ. Ս. Գորբաչովը,— յուրատեսակ «խլություն» սոցիալական հարցերի նկատմամբ: Սոցիալական ոլորտը սկսել էր հետ մնալ և՛ իր տեխնիկական հագեցվածությամբ, և՛ կադրերի որակավորմամբ, իսկ գլխավորը՝ իր աշխատանքի որակով» (М. С. Горбачев, Перестройка и новое мышление для нашей страны и для всего мира. М., 1987, стр. 15): Ահա թե ինչու կուսակցությունն առաջադրեց և հիմնավորեց երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման, ողջ հասարակական կյանքի վերակառուցման և դրա հիման վրա՝ սովետական հասարակության որակապես նոր վիճակի, նրա դեմոկրատացման հասնելու ծավալուն կոնցեպցիան:

Արագացման ստրատեգիան, որ մշակել են ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի ապրիլյան պլենումը և կուսակցության XXVII համագումարը, սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի որակական վերափոխմանը, գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների հիման վրա նրա նյութատեխնիկական բազայի արմատական նորացմանը, հասարակական, և, առաջին հերթին, տնտեսական հարաբերությունների կատարելագործմանը, աշխատանքի բովանդակության ու բնույթի, մարդկանց կյանքի նյութական ու հոգևոր պայմանների մեջ խոր վերափոխումների, քաղաքական, հասարակական և գաղափարախոսական հաստատությունների ողջ համակարգի ակտիվացմանը նպատակամղված կուրսն է:

Հասարակության լիարյուն զարգացումն ապահովելու երաշխիքներից են սոցիալիստական կարգի դեմոկրատացման զարգացումը, ժողովրդի ռեալ և ավելի ու ավելի ակտիվ մասնակցությունը երկրի կյանքի բոլոր հարցերի լուծմանը, հրապարակայնության, հասարակական վերահսկողության, քննադատության և ինքնաքննադատության լենինյան սկզբունքների լրիվ վերականգնումը: Ներկայումս մեր հասարակության մեջ տեղի ունեցող փոփոխությունները վկայում են, որ երկրում լայնորեն ծա-

---

ՄԵԼՔՈՒՄՅԱՆ ԳԱԳԻԿ ԱՐՄԵՆԱԿԻ— փիլիսոփայական գիտությունների թեկնածու, ԽՊՀ-ի փիլիսոփայության պատմության ամբիոնի դասախոս:

վալվում ու խորանում է կյանքի բոլոր կողմերի դեմոկրատացումը, փոխվում է մարդ-
կանց վերաբերմունքը աշխատանքի, իրենց արտադրական պարտականությունների
կատարման նկատմամբ: «Շատ բաներում դա որոշվում է նրանով,— ասաց Մ. Ս.
Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումում,— որ աշխա-
տավորները գործով պաշտպանում են վերակառուցման, սոցիալ-տնտեսական զար-
գացման արագացման կուրսը»:

Հոգատարությունը մարդու, նրա ընդունակությունների ու ձիրքերի բացահայտման
նկատմամբ վերակառուցման գլխավոր կողմնորոշիչներից է: Մարքսիստական այն
դրույթը, որ մարդու էությունը բոլոր հասարակական հարաբերությունների ամբող-
ջությունն է, մեր օրերում նոր բովանդակություն է ստանում: Բանն այն է, որ մարդ-
կային գործոնի ակտիվացման համար անհրաժեշտ է բոլոր հասարակական հարա-
բերությունների նպատակամղված, պլանաչափ ու համակողմանի կատարելագոր-
ծում: Այդ իմաստով արդի պայմաններում, վերակառուցման պայմաններում, մարդ-
կային գործոնի ակտիվացումը և հասարակական հարաբերությունների կատարելա-
գործումը դիալեկտիկորեն փոխկապակցված են, պայմանավորում են մեկը մյուսին:

Հաշվի առնելով այն, որ սոցիալիզմի օրոք կառավարումն ընդգրկում է բոլոր
սոցիալական երևույթներն ու պրոցեսները, որ հասարակության գիտական կառավա-
րումը սոցիալիստական և կոմունիստական շինարարության օրինաչափությունն է,
որ, վերջապես, կառավարման մեջ առավել ցայտուններեն է արտահայտվում կոնկրետ
հասարակական սիստեմի սոցիալ-քաղաքական էությունը, կարելի է եզրակացնել,
որ սոցիալական պրոցեսների գիտական կառավարման մեջ արտահայտվում է սո-
ցիալիզմի սոցիալ-քաղաքական էությունը:

Երբ խոսում ենք անհատի ազատության և սոցիալական պատասխանատվության
մասին, այն տպավորությունն է ստեղծվում, որ դա լոկալ, խիստ անձնական պրոբ-
լեմ է: Իսկ երբ դրվում է անհատի ազատության և պատասխանատվության պրոցես-
ների կառավարման հարցը, կարծես, ժխտվում է այդ պրոբլեմի ինքնուրույնությունը:
Սակայն մարդը հասարակական էակ է և նրա ազատությունն ու պատասխանատվու-
թյունը (ինչպես և բոլոր սոցիալական հատկությունները) հասարակության ծնունդ են:

Գիտական կառավարումը սոցիալիստական հասարակության մեջ ներկայանում
է որպես օբյեկտիվ անհրաժեշտություն: Դա որոշվում է նրանով, որ սոցիալիզմը
զարգանում է ոչ թե տարերայնորեն, այլ գիտակցականորեն, նպատակամղված: Ընդ
որում ամբողջ հասարակական կյանքի կարևորագույն կարգավորիչ է դառնում սուբ-
յեկտիվ գործոնը՝ աշխատավորների գիտակցական, պլանաչափ գործունեությունը,
պետական և հասարակական կազմակերպությունների ամբողջությունը, որոնց գլխա-
վորում ու ղեկավարում է կոմունիստական կուսակցությունը: Վերջինիս առանձնա-
հատուկ տեղ է պատկանում սոցիալիստական հասարակության կառավարման հա-
մակարգում:

Ներկայումս տեսական կարևոր նշանակություն է ստանում ՍՄԿԿ-ի դերի հար-
ցի լուսաբանումը անհատի ազատության և սոցիալական պատասխանատվության
փոխգործողության պրոցեսների գիտական կառավարման ասպարեզում: Այդ կա-
պակցությամբ կուսակցությունն իր գործունեությունը կենտրոնացնում է ամենից առաջ
այնպիսի խնդիրների լուծման վրա, ինչպիսիք են. ա) ժողովրդի կենսամակարդակի
հետագա աճը, նրա նյութական և հոգևոր պահանջմունքների առավել լիովին բա-
վարարումը. բ) բոլոր աշխատավորների գիտակցականության մակարդակի բարձ-
րացումը, աշխատանքային կարգապահության ամրապնդումը, տիրոջ, հասարակու-
թյան մեջ տեղի ունեցող բոլոր երևույթների համար պատասխանատվության զգա-
ցումի զարգացումը յուրաքանչյուր աշխատողի մեջ. գ) բացասական երևույթների,
կոմունիստական բարոյականության հակոտնյաների դեմ պայքարի ակտիվացումը:

Անհատի ազատության և սոցիալական պատասխանատվության փոխգործողու-
թյան պրոցեսների կառավարման համակարգում կուսակցության ղեկավար գործու-
նեության մեջ գլխավոր տեղ է գրավում տնտեսական քաղաքականությունը: Պետու-
թյան տնտեսական շինարարությունը Վ. Ի. Լենինը համարում էր մեր հասարակու-
թյան գլխավոր քաղաքականությունը (տե՛ս **ԵԼԺ**, հ. 41, էջ 487): Սահմանելով ա-
րագացման ստրատեգիայի հիմնական խնդիրները, ՍՄԿԿ XXVII համագումարը,
Կենտկոմի հետագա պլենումները հռչակեցին, որ կուսակցությունը հետևողականորեն
կշարունակի իրականացնել իր տնտեսական քաղաքականությունը, որի բարձրա-
գույն նպատակն է ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի ան-
շեղ բարձրացումը, անհատի համակողմանի զարգացման համար լավագույն պայ-



մանների ստեղծումը: Այդ կուրսի հաջող կենսագործումը կուսակցությունն իրականացնում է կազմակերպական և տնտեսական միջոցառումների համակարգի միջոցով, որոնցում կարևորագույն տեղ են գրավում հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացման ապահովումը, նրա արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջադիմության արագացումը, աշխատանքի արտադրողականության աճը, աշխատանքի որակի ըստ ամենայնի բարելավումը ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում:

ՍՄԿԿ-ի տնտեսական քաղաքականությունն ուղղված է անհատի ազատության արտադրատնտեսական հիմքերի բարելավմանն ու կատարելագործմանը: Սոցիալիզմի համար բնորոշ է այն, որ անհատի տնտեսական ազատությունը ռեալ կերպով ապահովվում է լոկ այն ժամանակ, երբ անհրաժեշտ նախապայմաններ են ստեղծվում ողջ հասարակության տնտեսական ազատության համար: Ժողովրդի բարեկեցության բարձրացմանն ուղղված ծրագրերի իրականացումը հենվում է հանրային արտադրության աճի, նրա հետագա ինտենսիվացման վրա, սովետական մարդկանց գիտակցականության, սոցիալական և աշխատանքային պատասխանատվության մակարդակի բարձրացման վրա:

Սակայն պետք է նշել, որ մարդկանց նյութական կենսամակարդակի բարձրացումն ինքնին դեռ չի նշանակում, որ դրանով իսկ ինքնաբերաբար աճում է նաև նրանց սոցիալական պատասխանատվությունը: Նյութական բարիքներով միատեսակ ապահովվածության դեպքում էլ մարդկանց առօրյա կյանքի կազմակերպման եղանակները կարող են սկզբունքորեն տարբերվել, քանի որ տարբեր անհատներ և մարդկանց խմբեր իրենց կենսագործունեությունը կազմակերպում, կառուցում են՝ ելնելով ոչ միայն տնտեսական պայմաններից, այլև արժեքների, սովորությունների, ավանդույթների իրենց ներհատուկ համակարգերից և այլն:

Առաջադիմական սոցիալական հատկանիշների (այդ թվում՝ սոցիալական պատասխանատվության) ձևավորման ու զարգացման համար հսկայական նշանակություն ունի **աշխատանքային դաստիարակությունը**, որն իրականացվում է դաստիարակչական գործունեության մյուս ուղղությունների հետ միասնաբար: Դրա հետ մեկտեղ, վերը նշված խնդիրների հաջող լուծման համար անհրաժեշտ է ներգործել աշխատավորների կենսապայմանների վրա այն հաշվով, որ իրենք՝ այդ պայմանները, նպաստեն նրանց մեջ առաջավոր սոցիալական հատկանիշների ձևավորմանը: Ուստի իր սոցիալական քաղաքականության մեջ ՍՄԿԿ-ն օգտագործում է զանազան տնտեսական, կազմակերպական և դաստիարակչական լծակներ:

Հայտնի է, որ սոցիալիստական կարգապահությունն անհատի պատասխանատվության դրսևորումն է, և որ դա հնարավոր է միայն ազատ գործունեության պրոցեսում: Վ. Ի. Լենինը պատասխանատվությունը դիտում էր կարգապահության և կազմակերպվածության հետ անխզելի կապի մեջ, մատնանշելով, որ անհրաժեշտ է «առանձնապես մեծ ուշադրություն դարձնել աշխատավորների ընկերական կարգապահության զարգացմանն ու ամրապնդմանը և նրանց ինքնագործունեության ու պատասխանատվության գիտակցության բազմակողմանի բարձրացմանը» (**ԵԼԺ**, հ. 38, էջ 121): Աշխատանքի գիտակցական կարգապահության ձևավորումը կարևոր տեղ է գրավում ՍՄԿԿ-ի գաղափարախոսական-դաստիարակչական գործունեության մեջ:

Վերակառուցման պայմաններում աշխատանքի բարձր կարգապահության անհրաժեշտությունը որոշ չափով որոշվում է արտադրատեխնիկական բնույթի գործոններով: Մեր էկոնոմիկայի արդի մասշտաբներն ու մակարդակը, գիտատեխնիկական հեղափոխության հարաճուն ազդեցությունն ավելի բարձր պահանջներ են ներկայացնում ոչ միայն աշխատողների պրոֆեսիոնալ որակավորմանը, այլև նրանց կազմակերպվածությանը, պատասխանատվությանը: Սոցիոլոգիական շատ հետազոտությունների տվյալները ցույց են տալիս, որ այն ձեռնարկություններում, ուր լավ է կազմակերպված աշխատանքը, որտեղ կարգապահությունը բարձր մակարդակի վրա է, այնտեղ իրենց պարտականությունների կատարմանը պատշաճ պատասխանատվությամբ են վերաբերվում թե՛ բանվորները, թե՛ ծառայողները, թե՛ ինժեներատեխնիկական աշխատողները: Անկարգապահ մարդն անգամ բարձր կազմակերպված և համերաշխ կոլեկտիվում արագորեն յուրացնում է սահմանված կարգուկանոնի ներքին կանոնների պահպանման անհրաժեշտությունը: Հետևաբար, կոլեկտիվում գործի կազմակերպումը գիտակցական կարգապահության ձևավորման ու զարգացման կարևորագույն պայման է: Կոլեկտիվը հասարակության այն օղակն է, որտեղ ձևա-

վորվում են աշխատավորների նոր, սոցիալիստական հատկանիշները: Սոցիալիստական աշխատավորական կոլեկտիվը սոցիալական խմբի նոր տիպ է, որը բնութագրվում է նպատակների ու շահերի միասնությամբ, գաղափարական ընդհանրությամբ, ընկերական համագործակցության և փոխօգնության հարաբերություններով, հասարակական-քաղաքական և սոցիալ-տնտեսական հարցերի լուծման դեմոկրատիզմով, կարգապահությամբ և կառավարման սոցիալիստական ոճով:

Կարգապահությունը արտադրական կոլեկտիվում կախված է նախ և առաջ նրա յուրաքանչյուր անդամի գիտակցական ինքնակարգապահությունից, նրա կուլտուրական պրոֆեսիոնալ մակարդակից: Սակայն աշխատանքային կարգապահության վրա մեծ չափով ազդում են նաև տեխնիկա-տեխնոլոգիական գործոնները, մասնավորապես, աշխատանքի մեքենայացման մակարդակը: (Ինչպես հայտնի է, մինչև 2000 թվականը ձեռքի աշխատանքի բաժինը արտադրական ոլորտում նախատեսված է կրճատել մինչև 15—20 տոկոսով):

Աշխատանքի կարգապահության ամրապնդման, աշխատողների սոցիալական պատասխանատվության բարձրացման համար հսկայական նշանակություն ունի աշխատավորական կոլեկտիվում տեղի ունեցող սոցիալական պրոցեսների կառավարմանը մարդկանց անմիջական մասնակցության ընդլայնումը: Ահա թե ինչու ՍՄԿԿ XXVII համագումարը և հատկապես Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումը խնդիր դրեցին՝ ընդլայնել ձեռնարկությունների իրավունքները, բարձրացնել աշխատավորական կոլեկտիվների դերը տնտեսական կառավարման գործում: Երկրի էկոնոմիկայի կառավարման արմատական ռեֆորմի նպատակներից մեկը, որ նշել է Կենտկոմի 1987 թվականի հունիսյան պլենումը, «հասարակության, կոլեկտիվի և յուրաքանչյուր աշխատողի շահերի օրգանական զուգակցումն է, մարդու համակողմանի զարգացումը, սովետական մարդկանց բարեկեցության որակապես նոր մակարդակի հասնելը»: Ռեֆորմը հնարավորություն է տալիս, որ կոլեկտիվն ու նրա առանձին անդամը բավարար բարձր աստիճանի ինքնուրույնություն (ազատություն) ունենան տնտեսական լուծումների ընտրության, դրանց իրականացման նկատմամբ վերահսկողության գործում և նույնքան էլ բարձր պատասխանատվություն կրեն այդ ամենի համար: Այն նոր աստիճանի ազատությունը, որ այժմ ստանում են ավելի ու ավելի մեծ թվով աշխատավորական կոլեկտիվներ, իր հետ բերում է նաև նոր աստիճանի պատասխանատվություն հանձնարարված գործի համար, իսկ դա, իր հերթին, դառնում է յուրաքանչյուր մարդու՝ որպես անհատի, ինքնակարգապահության ամրապնդման հզոր գործոն: Այդ բանն ապացուցված է բրիգադային կապալի և աշխատանքի կազմակերպման մյուս առաջադիմական ձևերի փորձով, որոնք համապատասխանում են տնտեսավարման նոր պայմաններին և ինքնակառավարման սկզբունքներին:

Անհատի ազատության ծավալման և նրա պատասխանատվության մակարդակի բարձրացման պրոցեսների կառավարումը կոմունիստական կուսակցության կողմից ընդգրկում է նաև սոցիալ-քաղաքական զարգացման և գաղափարադաստիարակչական աշխատանքի հարցեր, որտեղ նախկինում նույնպես նկատվում էին լճացման երևույթներ: Ներկայումս կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացմանն ու կատարելագործմանը՝ հանդես գալով որպես դրա նախաձեռնող օղակ: Մեր դեմոկրատիան նշանակում է ոչ միայն իշխանություն ժողովրդի համար, այլև ժողովրդի իսկական լիիշխանություն, որը, ըստ Վ. Ի. Լենինի, ի սպաս էր դրված ոչ թե ազատությանն ընդհանրապես, այլ նվաճված ազատության պրոլետարական օգտագործմանը: Հասարակության բոլոր անդամների ազատ համակողմանի զարգացման ապահովումը կուսակցության կողմից ենթադրում է հասարակական կյանքի կառավարմանը ակտիվ մասնակցության հնարավորություններ ստեղծում նրանց համար: Իսկ դա նշանակում է հաստատել և հետևողականորեն խորացնել իսկական դեմոկրատիան աշխատավորների համար, առանց որի, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, անհնարին է հաղթական սոցիալիզմ (տե՛ս **ԵԼԺ**, հ. 30, էջ 257):

Վերակառուցման պայմաններում աճել են հասարակության և պետության գործերի կառավարմանը յուրաքանչյուր քաղաքացու մասնակցության հնարավորությունները ու պահանջմունքները: Նոր խնդիրների մասշտաբներն ու բարդությունը, ինչպես ընդգծվում է կուսակցության ծրագրի նոր խմբագրության մեջ, պահանջում են հետևողականորեն ու անշեղորեն զարգացնել ժողովրդի ինքնակառավարումը: «Սոցիալիստական հասարակության մեջ, առանձնապես արդի պայմաններում,—



նշեց Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ XXVII համագումարում,— կառավարումը պրոֆեսիոնալների նեղ շրջանակի արտոնությունը լինել չի կարող: Ոչ միայն տեսությունից, այլև սեփական բազմամյա պրակտիկայից մենք գիտենք, որ սոցիալիստական կարգը հաջողությամբ է զարգանում միայն այն ժամանակ, երբ ժողովուրդն ինքն է ռեալ կերպով կառավարում իր գործերը, երբ միլիոնավոր մարդիկ մասնակցում են քաղաքական կյանքին» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 77):

Սովետական դեմոկրատիային բնորոշ է բոլորի շահագրգռվածությունը կարծիքների համադրման, բացահայտ ու սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության, յուրաքանչյուր քաղաքացու հասարակական-քաղաքական ակտիվության բարձրացման գործում: Մեր հասարակության զարգացման նոր փուլում ավելի սուր կերպով, քան առաջ, զգացվում է քննադատության և ինքնաքննադատության ծավալման անհրաժեշտությունը, քանի որ, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVII համագումարում, «ստեղծվում է բարեհոգության, ամեն ինչում թույլատրելիության և անպատժելիության մթնոլորտ, որը հանգեցնում է ամենալուրջ հետևանքների» (նույն տեղը, էջ 112): Ուստի արվեց սկզբունքային հետևություն. «Կուսակցության մեջ չկան և չպետք է լինեն վերահսկողությունից դուրս, քննադատության առաջ փակ կազմակերպություններ, չկան և չպետք է լինեն կուսակցական պատասխանատվությունից պատնեշված ղեկավարներ» (նույն տեղը, էջ 113—114):

Հրապարակայնության, քննադատության և ինքնաքննադատության ըստ ամենայնի ծավալումը վերակառուցման պայմաններում անհատի ազատության դեմոկրատական հիմքերի զարգացման գրավականն է: Երկրի սոցիալ-տնտեսական առաջընթացի արագացմանը նպատակամղված ամբողջ գաղափարադաստիարակչական և կազմակերպչական աշխատանքի արդյունավետությունը ուղղակի ու անխզելիորեն կապված է պրոբլեմների քննարկման, որոշումների մշակման ու դրանց կատարման նկատմամբ վերահսկողության բնագավառում հրապարակայնության ըստ ամենայնի ընդլայնման հետ: Կուսակցությունը բացառիկ նշանակություն է տալիս այդ հարցին, քանի որ հրապարակայնությունը մարդկային գործոնի դերի բարձրացման պարտադիր ելակետային ու վճռական պայմանն է: Փիլիսոփայական առումով, քննադատությունը և ինքնաքննադատությունը, հրապարակայնությունը հանդես են գալիս որպես մարդկանց հարաբերությունների իմացության և գիտակցական կարգավորման ձևեր: Դրանք ունեն ոչ միայն ճանաչողական նշանակություն, այլև սոցիալական ուղղվածություն: Վ. Ի. Լենինն այդ առիթով գրել է, որ «եթե մենք չվախենանք նույնիսկ դառն ու ծանր ճշմարտությունն ուղղակի ասելուց, մենք կսովորենք, անպայման ու անպայման կսովորենք հաղթահարել բոլոր ու ամեն տեսակի դժվարությունները» (**ԵԼԺ**, հ. 44, էջ 251):

ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը հսկայական ուշադրություն են նվիրում ոչ միայն աշխատավորների բարեկեցության հետագա բարձրացմանը, այլև նրանց հոգևոր կյանքի անընդմեջ կատարելագործմանը: Անհատի ազատ, համակողմանի զարգացումն ապահովելու համար անհրաժեշտ են ոչ միայն նյութական, այլև հոգևոր նախադրյալներ: Հոգևոր-գաղափարախոսական գործունեության բնագավառում կուսակցության ջանքերն ուղղված են գիտության ու մշակույթի ըստ ամենայնի զարգացմանը, ստեղծագործական աշխատանքի մթնոլորտի ստեղծմանը, գաղափարաքաղաքական և բարոյական դաստիարակության կատարելագործմանը: Արդի փուլում աճում է կուսակցության դերն անհատի հոգևոր զարգացման պրոցեսների կառավարման գործում, առանց որի անհնար է սոցիալիստական հասարակության առաջադիմությունը: «Մեզ համար առանձնապես կարևոր են հոգևոր կյանքի վերակառուցման առաջին քայլերը,— ասաց Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում,— քանի որ առանց հասարակական գիտակցության մեջ բեկման, առանց մարդկանց հոգեբանության ու մտածողության, տրամադրության մեջ փոփոխությունների անհնար է հաջողության հասնել»:

Հայտնի է, որ ինչպես հասարակության, այնպես էլ անհատի հոգևոր կյանքը որոշվում է նյութական արտադրությամբ, հասարակության զարգացման տվյալ մակարդակին համապատասխան: Այդ առթիվ Կ. Մարքսը գրել է. «Հոգևոր և նյութական արտադրության միջև եղած կապը ուսումնասիրելու համար ամենից առաջ անհրաժեշտ է բուն այդ նյութական արտադրությունը դիտել ոչ թե որպես մի համընդհանուր կատեգորիա, այլ **որոշակի պատմական ձևով**: Այսպես, օրինակ, արտադրության կապիտալիստական եղանակին համապատասխանում է հոգևոր արտադրության այլ տեսակ, քան արտադրության միջնադարյան եղանակին: Եթե բուն

նյութական արտադրությունը չվերցնենք իր **յուրահատուկ պատմական ձևով**, ապա անհնար է հասկանալ նրան համապատասխանող հոգևոր արտադրության և երկուսի փոխգործակցության բնորոշ առանձնահատկությունները» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 26, ч. I, стр. 278):

Հասարակության և անհատի հոգևոր կյանքը նրանց նյութական գոյավիճակի որոշակի, կոնկրետ-պատմական ձևի արտացոլումն է: Սակայն, ինչպես հայտնի է, հոգևոր կյանքն ունի իր հարաբերական ինքնուրույնությունը և կարող է ակտիվորեն ներգործել տնտեսական հիմքի վրա:

Մարդկանց հոգևոր կյանքի հարստացումը նպաստում է նրանց՝ որպես անհատների, համակողմանի զարգացմանը: Սոցիալիզմի պայմաններում աճում է հոգևոր կյանքի այնպիսի ձևերի դերը, ինչպիսիք են քաղաքական գիտակցությունը, աշխարհայացքը (որի միջուկն է մարքս-լենինյան փիլիսոփայությունը), իրավագիտակցությունը, բարոյականությունը, գրականությունը, արվեստը: Կուսակցությունը ելնում է այն բանից, որ նոր մարդու ձևավորումը նոր հասարակության կառուցման ոչ միայն արդյունքն է, այլև կարևորագույն պայմանը: Ռեալ առաջադիմությունն անհնարին է առանց մարդկանց կուլտուրայի, կրթության, գիտակցականության և գաղափարական հասունության բարձր մակարդակի: Մեր երկրում 1986—1987 թթ. ուսումնական տարում ուսուցման տարբեր ձևերում ընդգրկված էր 108,1 միլիոնից ավելի մարդ: 1936 թ. վերջին ՍՍՀՄ-ում կար բարձրագույն և միջնակարգ (լրիվ և թերի) կրթությամբ 164,3 մլն մարդ կամ զբաղված բնակչության հնն տասներորդը: Աստղաբաշխական թվերի են հասնում տպագիր հրապարակումները: Անչափ նշանակալի են մեր նվաճումները կրթության ու մշակույթի բնագավառում: Այդուհանդերձ, այդ բնագավառում ևս եղել են լճացման երևույթներ: Ուստի կուսակցությունն առաջնահերթ խնդիր է համարում միջնակարգ և բարձրագույն դպրոցի ռեֆորմի կենսագործումը:

Հասարակական և անձնական կյանքի կուլտուրական վերափոխումները վերակառուցման պայմաններում որակապես նոր նշանակություն են ստանում: ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մեջ նշված է, որ, հետևողականորեն ղեկավարվելով կուլտուրական շինարարության լենինյան սկզբունքներով, կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս հոգևոր և նյութական մշակույթի հարստությունների ավելի լրիվ յուրացմանը աշխատավորական զանգվածների կողմից: Սոցիալիստական հասարակության զարգացման ներկա փուլն անհրաժեշտ գաղափարախոսական և կուլտուրական նախադրյալներ է ստեղծում անհատի ազատությունն ընդլայնելու և նրա սոցիալական պատասխանատվությունը բարձրացնելու համար:

Սոցիալիստական հասարակության կատարելագործման պայմաններում, երբ զգալիորեն ընդլայնվում է բարոյական կարգավորման ոլորտը կյանքի բոլոր բնագավառներում, կուսակցությունն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում բարոյական դաստիարակության հարցերին: Ինչպես հայտնի է, բարոյական ազատությունն իր արտահայտությունն է գտնում այն բանում, որ մարդն իր մտքերն ու գործողությունները հարաբերակցում է ճանաչված անհրաժեշտության պահանջներին, որը մարմնավորվում է հասարակական բարոյականության սկզբունքների ու նորմերի մեջ: Բարոյական հարաբերություններում «ազատությունը» սուբյեկտիվ կամայականություն է, ինքնակամություն, քանի որ նա, ով իրեն չի նեղում բարոյականության պահանջներով, ով չունի պարտքի ու պատասխանատվության զգացում, նա, Հեգելի արտահայտությամբ, ունի լոկ «ազատության պատրանք»:

Իրական բարոյական ազատություն գոյություն ունի այնտեղ և այն ժամանակ, երբ մարդը կամովին, առանց դրսից որևէ ճնշման, բացառապես իր սեփական ըմբռնմամբ ու ազատ կամքի ուժով իր համար ընտրում է հասարակական շահերի հետ համաձայնեցրած վարքագիծ: Մարդու պրակտիկ գործունեությունը, որքանով դա շոշափում է ուրիշ մարդկանց, պետության և հասարակության շահերը, ծնում է պատասխանատու կախման հարաբերություն: Անհատի համար այն հանդես է գալիս որպես իր մտքերի ու գործողությունների, իր վարքագծի համար պատասխանատու լինելու անհրաժեշտության զգացում և ըմբռնում:

ՍՄԿԿ-ն պլանաչափ, գիտականորեն հիմնավորված բնույթ է հաղորդում անհատի բարոյական զարգացման պրոցեսին: Սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործմանն ուղղված կուսակցության քաղաքականությունը հասարակության բոլոր խավերի համար ապահովում է կյանքի այնպիսի



սոցիալ-տնտեսական և քաղաքական պայմաններ, որոնք օբյեկտիվորեն նպաստում են կոմունիստական բարոյական իդեալի սկզբունքների ընկալմանը սովետական մարդկանց կողմից: Սովետական ապրելակերպի բարոյական առաջադիմության գրավականը մեր սևեռուն ուշադրությունն է չլուծված պրոբլեմների ու դժվարությունների նկատմամբ: «Իրականության» «անպրոբլեմային» ցուցադրումը վատ ծառայություն մատուցեց. խզում առաջացավ խոսքի և գործի միջև, որը ծնում է հասարակական պասսիվություն, անվստահություն հռչակվող լոզունգների նկատմամբ,— գրում է Մ. Ս. Գորբաչովը:— Հասկանալի է, որ այդպիսի իրավիճակում սկսել է նվազել վստահությունն այն բանի նկատմամբ, ինչի կոչ էինք անում, ինչ ասվում էր ամբիոններից, տպագրվում թերթերում և դասագրքերում: Սկսվեց հասարակական բարոյականության անկում» (М. С. Горбачев. Перестройка и новое мышление для нашей страны и для всего мира, стр. 16): Դրա հետ մեկտեղ, որքան էլ սուր լինեն քննադատությունն ու ինքնաքննադատությունը, դրանք պետք է խարսխված լինեն այն համոզման վրա, որ միայն սոցիալիզմն է մարդու իսկական ազատագրության ու զարգացման երաշխիքը:

Էկոնոմիկայի, հասարակության կենսագործունեության բոլոր ոլորտների վերակառուցումը տանում է դեպի աշխատավորական լայն զանգվածների բարոյական հասունացում: Միևնույն ժամանակ ավելի ու ավելի պարզորոշ է դառնում մեր տնտեսական և այլ նվաճումների կախումը սովետական մարդկանց բարոյական հասունության մակարդակից: Այդ ամենը նշանակալի չափով նպաստում է պատասխանատվության ու նախաձեռնության, գործարարության և կազմակերպվածության, բացասական երևույթների նկատմամբ անհանդուրժողական վերաբերմունքի ոգով մարդկանց բարոյական դաստիարակության կատարելագործմանը:

Անհատի ազատության և սոցիալական պատասխանատվության փոխհարաբերության պրոցեսների կառավարումը սոցիալիզմի պայմաններում նրա աշխատանքի, տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր կյանքի ռացիոնալ կազմակերպումն է. դա նաև կոմունիստական իդեալների, սոցիալիստական իրավունքի և բարոյականության նորմերի պահպանման ոգով անհատի դաստիարակությունն է:

---



արտահայտվում է նրանց դիալեկտիկական փոխադարձ կապը: Վերակառուցումն իրավամբ անվանվում է հեղափոխական, խաղաղ հեղափոխության, պայքարի մեջ պետք է ներգրավված լինեն լայն զանգվածները, «դեմոկրատիան», որպես նպատակ, պետք է դառնա այդ պայքարի ցանկալի արդյունքը:

Սոցիոլոգները ի՞նչ դիրքերից պետք է մասնակցեն այդ պրոցեսներին: Այդ կապակցությամբ հարկավոր է հավաստել պրոֆեսիոնալ ինքնագիտակցության անհասունությունը, անզարգացածությունը, ավելին՝ նրա որոշակի խեղաթյուրվածությունը: Սոցիոլոգի գործունեությունը ի՞նչ չափով է ուղղված սոցիումին: Չէ՞ որ, եթե բնական գիտությունների ներկայացուցիչները օրինաչափությունները որսում են, այսպես ասած, անէությունից, քաոսից, ապա սոցիոլոգիան գործնական հանձնարարականները մշակում է սոցիալական պրակտիկայում արդեն ընդունված վարքի օրինակների բացահայտման, տիպաբանացման և տիրաժավորման հիման վրա:

Շատ կարևոր է թվում սոցիոլոգի արժեքային դիրքորոշումը: Նրանից պահանջվում է բարձր քաղաքացիականություն, մարտիկի հատկություններ, աշխատավորների բուն շահերը բացահայտելու և դրանք հետևողականորեն պաշտպանելու ունակություն: Սովետական իշխանության յոթանասուն տարիների ընթացքում տարեցտարի մեր հասարակության հռչակվող բարձրագույն նպատակն է ներդաշնակ, համակողմանի զարգացած անհատի ձևավորումը, սոցիալական արդարության հասարակության ստեղծումը ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացման, գիտատեխնիկական առաջադիմության հիման վրա (որպես միջոցի) և այլն: Իսկ իրականում տեղի է ունենում նպատակների նենգափոխում միջոցներով: Սոցիալ-տնտեսական գործունեության նկատմամբ ներկայիս կոմպլեքսային, դիալեկտիկական մոտեցման պայմաններում պահանջվում է, մի կողմից ուժեղացնել գիտատեխնիկական առաջադիմության ազդեցությունը սոցիալական խնդիրների լուծման վրա, մյուս կողմից՝ ուժեղացնել սոցիալական միջոցառումների ներգործությունը գիտատեխնիկական առաջադիմության արագացման վրա: Ուշագրավ է, որ ամենավերջին ժամանակաշրջանում որպես սկզբունք առաջադրված է «Սոցիալական էֆեկտը՝ այժմ» (բնակարանային պրոբլեմի լուծման օրինակով):

Սոցիոլոգները հանձին ՍՍԱ-ի ղեկավարության այժմ ավելի շատ իրավունքներ են պահանջում: Մեզ թվում է, դրա հետ մեկտեղ անհրաժեշտ է մտածել հեղինակություն ձեռք բերելու մասին: Իրավունքները պետք է ձևականորեն վավերագրեն ձեռք բերված (ցավոք, առայժմ ձեռք չբերված) հեղինակությունը: Սոցիոլոգը պետք է լինի նաև հրապարակախոս, գործի՝ ելնելով աշխատավոր զանգվածների շահերից և այդ զանգվածների գիտակցությանը դիմի բոլոր հնարավոր մեթոդների միջոցով, այլ ոչ թե կատարի բյուրոկրատական ապարատի սոցիալական պատվերը:

Մի քանի խոսք սոցիոլոգիայի կադրերի մասին: Լայնորեն հայտնի են այդ բնագավառում եղած պրոբլեմները: ՍՍԱ-ի պրեզիդենտ Տ. Ի. Զասլավսկայայի ելույթներում նշվում է, որ բարձրագույն սոցիոլոգիական կրթություն ստանալը հնարավոր է դարձել լոկ վերջին տարիներին. պրոֆեսիոնալ բոլոր պրակտիկ-սոցիոլոգները նախկինում եղել են փիլիսոփաներ, տնտեսագետներ, իրավաբաններ, ինժեներներ և այլն: Պրոֆեսիոնալ պատրաստությունը սոցիոլոգն ստանում է ասպիրանտուրայում, ստաժավորման ժամանակ, անձնական շփումների միջոցով և այլն: Այս ամենը չի կարող չազդել պրոֆեսիոնալ պատրաստության քանակի և որակի վրա:

Բայց ստեղծված իրավիճակին կարելի է մոտենալ նաև լավատեսորեն: Այնպիսի պայմաններում, երբ պահանջվում է կոմպլեքսային մոտեցում կուտակված պրոբլեմների լուծմանը, երբ զարգանում են միջառարկայական հետազոտությունները, կարող է պատահել, որ սոցիոլոգիան միջառարկայականությանն ամենից ավելի հարմարված մոնոառարկան է ոչ միայն իր մեթոդոլոգիայով, մեթոդիկայով, ընդգրկված հարցերի լայնությամբ, այլև իր կադրերի կազմով (յուրաքանչյուր սոցիոլոգ գործնականորեն ունի առնվազն մեկ այլ մասնագիտություն ևս):

Նոր սոցիոլոգիական մտածողությունը պահանջում է նաև փոխել աշխատանքի ստեղծված մեթոդներն ու ձևերը: Մի կողմից, առաջադրված խնդիրների վիթխարիության, գերբարդության և, մյուս կողմից, հայրենական սոցիոլոգիայի թուլության պայմաններում ջանքերը պետք է ուղղված լինեն սոցիոլոգների՝ որպես սոցիալ-պրոֆեսիոնալ խմբի, համախմբմանը, առավելագույն ամբողջական արդյունքի ստացմանը: Նշանակում է, անհրաժեշտ է ստեղծել գործիքակազմ, մեթոդիկաներ, որոնցից կարող էր օգտվել և որակական արդյունքներ ստանալ նաև թույլ պատրաստված սոցիոլոգը: Իհարկե, դա սև, շատ բաներով անշնորհակալ աշխատանք է,



որը մեծ դիվիդենտներ չի բերում դրանում ներգրավվող բարձրորակ սոցիոլոգներին: Բայց տվյալ դեպքում անձնական շահերը, ավելի խստորեն ասած՝ պատվասիրությունները, անհրաժեշտ է զոհաբերել պրոֆեսիոնալ, և ավելի լայնորեն՝ հասարակական շահերին:

Վ. ՊՈՊՈՎ. Այն սխեմայի հիմքում, որը Թոմաս Մանը նշել է որպես «կապարային» սոցիոլոգիզմ, ընկած է նաև դոգմատիկ պատկերացումը հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքի մասին, որը ստեղծվել էր դեռ սոցիալիստական վերափոխումների առաջին տարիներին: Այսպես, սոցիալական միասեռության ձևավորումը նույնացվում էր սեփականության կամային «պետականացման» հետ, այն «ոչ ոքի» դարձնելու հետ, անտեսվում էր սոցիալական խմբերի տնտեսական շահերի յուրահատկությունը, ներդասակարգային և միջդասակարգային տարբերությունները: Մինչդեռ, արտադրության ոլորտում լճացումը և հավասարարությունը ժողովրդի մեջ ձևավորեցին անպատասխանատվության և խնամառության տրամադրություններ, սպասումներ, որ հասարակությունը կկարողանա բարելավել կենսապայմանները՝ առանց ինտենսիվացնելու աշխատանքը կոնկրետ աշխատատեղերում: Ընկել էր բարձրորակ աշխատանքի վարկը, աշխատանքային բարձր արդյունքների և բարձր վաստակների հասնելու ձգտումը սկսել էր մեկնաբանվել որպես սովետական ապրելակերպի նորմերի հետ անհամատեղելի բան: Նորագույն սոցիոլոգիական հետազոտությունները վկայում են. ցածր որակավորում ունեցող բանվորների շրջանում (նախաինդուստրիալ և վաղ ինդուստրիալ աշխատանքի զանազան տեսակներով մեզանում ընդգրկված է արդյունաբերական բանվորների մոտավորապես 35 տոկոսը) գոյություն ունի օբյեկտիվ շահագրգռվածություն՝ պահպանելու լճացման մեխանիզմը:

Շեշտակիորեն ընկել է մտավորականության սոցիալական վարկը: Նույնիսկ գոյություն ունի այն կարծիքը, որ մտավորականությունը սնվում է նրանց հաշվին, ովքեր զբաղված են ֆիզիկական աշխատանքով ու «անմիջականորեն» նյութական բարիքներ են արտադրում: Ազնվորեն ասած, ես վիրավորվում եմ, երբ նամակներում կարդում եմ. «Բոլորը չէ, որ պետք է դոկտորներ և թեկնածուներ լինեն, ոմանց էլ աշխատել է պետք...»: Իսկ միտումը հստակորեն կարելի է նկատել. պատերազմից առաջ մասնագետների միջին աշխատավարձը ժողովրդական տնտեսության մեջ բանվորների վաստակները գերազանցում էր 2,2—2,4, 1960 թվականին՝ 1,5—2,2 անգամ: 80-ական թվականների կեսերին տարբերությունները գործնականորեն վերացված են: Արդյունաբերության մեջ ինժեներատեխնիկական աշխատողները ստանում էին բանվորներից միայն 10 տոկոսով ավելի, իսկ շինարարության մեջ նույնիսկ 2 տոկոսով քիչ: Սա անկասկած ձևախախտում է, և խոսքն այն մասին չէ, որ ավելի շատ «տանք» ինժեներին, այլ այն մասին, որ նրան դարձնենք իսկական ինժեներ սոցիալական և պրոֆեսիոնալ տեսակետներից:

Գ. ՍԱՅԱՄՈՎ. Ես կցանկանայի կանգ առնել գործարանային սոցիոլոգիայի պրոբլեմների վրա, քանի որ ներկայումս, ամբողջ տնտեսական մեխանիզմի սկսված վերակառուցման պայմաններում, նրանց հրատապությունն անչափ աճում է: Գործարանային սոցիոլոգիան մեր երկրում ունի համեմատաբար ոչ երկար պատմություն, սակայն անհրաժեշտ է թվում կանգ առնել նրա զարգացման որոշ հիմնական ուղենիշների վրա: Առաջին փուլը վերաբերում է 60-ական թվականների սկզբին, երբ արտադրական շատ միավորումներում և ձեռնարկություններում սկսեցին ստեղծվել սոցիոլոգիական ծառայություններ: Միևնույն ժամանակ ձևավորվում էին նաև ճյուղային սոցիոլոգիական ծառայությունները, որոնք կոչված են ճյուղային մակարդակի սոցիալական պրոցեսների հետազոտությունների հետ միասին կոորդինացնելու գործարանային սոցիոլոգիական ծառայությունների աշխատանքը: Քանի որ բացակայում էր կիրառական սոցիոլոգների պատրաստման համակարգը, սկզբնական շրջանում գործարանային սոցիոլոգիայի ծառայության մեջ էին մըտնում տարբեր մասնագիտությունների տեր մարդիկ: Շատերին հրապուրում էր հետաքրքրական թեմատիկան, և հետագայում նրանք վերաորակավորվում էին սոցիոլոգների: Պետք է ավելացնել, որ չնայած դեպի սոցիոլոգիա սկսված «մասսայական արշավին», կատարվող հետազոտությունների հատույցը, փոքր բացառությամբ, բարձր չի եղել: Դա այն ժամանակ էր, երբ մասսայաբար հրապուրվել էին սոցիալական պասպորտներով, սոցիալական զարգացման պլաններով: Կատարվում էին բազմաթիվ հետազոտություններ, որոնք նվիրված էին հոսունության, երիտասարդության ադապտացիայի պրոբլեմների ուսումնասիրմանը և այլն:

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴՈՒ ԱԿՏԻՎ ԿԵՆՍԱԴԻՐՔՈՐՈՇՄԱՆ ԴԻԱԼԵԿՏԻԿԱՆ

Հ. ՄՈՔՈՅԱՆ

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ համար սոցիալ-տնտեսական, քաղաքական և պատմական նշանակություն ունեցող վերակառուցումը պայմանավորում է մասսաների, յուրաքանչյուր սովետական մարդու հեղափոխական-վերակերտիչ գործունեության անհրաժեշտությունը: Սովետական հասարակության մեջ սոցիալական առաջադիմության չափանիշ ու նրա բարձրագույն նպատակ է դառնում մարդն իր կոնկրետ պահանջներով և կյանքի բոլոր ոլորտներում ունեցած իր հասարակական կապերով: Պասսիվությունը, անհոգությունը, անտարբերությունը չեն կարող ապահովել հասարակության որակական վերափոխման կոնցեպցիայի նյութականացումը: Խոսելով վերակառուցման ընթացքում մարդկային գործոնի վճռորոշ դերի մասին, Մ. Ս. Գորբաչովը ՍՄԿԿ Կենտկոմում ինֆորմացիայի միջոցների ղեկավարների հետ ունեցած հանդիպման ժամանակ նշեց. «Պետք է ամրապնդել մարդուն, նրա ոգին, նրա համոզմունքները: Այն մարդու համար, ում գիտակցությունը երկատված է, ապրելն ու աշխատելը դժվար է: Նա կորցնում է կողմնորոշիչները, նա վերակառուցման ընդունակ չէ: Չի կարելի ավերել մարդու հոգևոր աշխարհը: Պետք է պաշտպանել և ամրացնել այն: Եթե գիտակցությունը չի խաթարված, այնժամ ամեն ինչ կստացվի: Պետք է գործել, ամենայն ակտիվությամբ պայքարել մտադրածի իրականացման համար: Մշակույթի ամբողջ պոտենցիալը պետք է ի սպաս դրվի մարդուն»:

Մասսաների ստեղծարար պոտենցիալի գործադրման նպատակով նրանց գիտակցությունը վերակառուցման ոգով փոփոխելու անհրաժեշտությունը ակնհայտ է դարձնում կանխանշված ծրագրերին հասնելու ուղիների, միջոցների որոնումը: Նովիթխարի սոցիալական կոնցեպցիան կկարողանա «գործել», եթե կիրառվեն սոցիալիզմի սոցիալական ռեսուրսները, անհատի, մարդկային գործոնի ստեղծագործական հնարավորությունները, քանզի մարքսիզմը տարբերվում է նրանով, որ «իրերի օբյեկտիվ դրության և էվոլյուցիայի օբյեկտիվ ընթացքի վերլուծման մեջ լիակատար գիտական զգաստությունը հիանալի կերպով միացնում է մասսաների հեղափոխական եռանդի, հեղափոխական ստեղծագործության, հեղափոխական ձեռներեցության նշանակության ամենավճռական ճանաչման հետ...» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ,** հ. 16, էջ 28): Մասսաների հեղափոխական ստեղծագործության, նրանց ակտիվության ու նպատակասլացության զարգացման՝ որպես վերակառուցման, նրանց սոցիալիստական գիտակցության գլխավոր հենարանի պայմաններից մեկը անհատի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորումն է:

Կենսադիրքորոշումն անհատի վերաբերմունքն է շրջապատող իրականության նկատմամբ, նրա կողմնորոշումը դեպի արժեքների ու իդեալների որոշակի համակարգը, դրանց իրացմանն ուղղված պրակտիկ գործողությունները: Այն դրսևորվում է մարդու բազմակողմանի գործունեության բոլոր ոլորտներում՝ գոյություն ունեցող արտադրական և այլ հասարակական հարաբերությունների միջոցով: Առօրյա կյանքում մարդն ընտրում է առաջնային սկզբունքներ և դրանց համապատասխան էլ մտովին ծրագրում իր ապագա պրակտիկ քայլերը. որոշ երևույթների նկատմամբ նա ունենում է դրական դիրքորոշում, մյուսների նկատմամբ՝ բացասական: Հետևաբար, կենսադիրքորոշման ընտրությունը մեծ դեր է խաղում ոչ միայն իր իսկ մարդու՝ կենսադիրքորոշման սուբյեկտի, այլև սոցիալական այն միջավայրի համար, որում տվյալ անհատն ստեղծում է իր կեցությունը:

Կենսադիրքորոշման էությունը ճիշտ հասկանալու համար բավական չէ ընդունել դրա ձևավորման գործում օբյեկտիվ նյութական պայմանների որոշիչ դերը: Պահանջվում է նաև դասակարգային մոտեցում, այն հասարակության դասակարգերի դերի հաշվառում, որի ներկայացուցիչներն են կենսադիրքորոշման սուբյեկտները, քանի որ «... դասակարգն է որոշում նրանց կենսավիճակը և դրա հետ մեկտեղ նաև նրանց անձնական ճակատագիրը, նրանց ենթարկում է իրեն» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, **Երկեր,** հ. 3, «Հայաստան» հրատ., 1987, էջ 77): Կարող են լինել դասակարգի այնպիսի ներկայացուցիչներ, որոնք չեն գիտակցում իրենց դասակարգային շահերը կամ գիտակցաբար մերժում են դրանք, որի հետևանքով նրանք կարող են ունենալ իրենց դասակարգի գրավածից տարբեր դիրքորոշում, սակայն տվյալ ֆորմացիայի շրջանակներում դասակարգի դիրքորոշումը մնում է անփոփոխ:

Սովետական մարդու կենսադիրքորոշումը կրում է նաև միկրոմիջավայրի կնիքը, իսկ միկրոմիջավայրը, վերջին հաշվով, որոշվում է սոցիալական հարաբերություններով: Միկրոմիջավայրում կենտրոնական տեղը բառիս լայն իմաստով պատկանում է կոլեկտիվին՝ որպես միասնական ձգտումներ ունեցող մարդկանց կազմակերպված հանրություն: Կոլեկտիվը լայն ասպարեզ է բացում բոլոր կենսական հարցերի լուծմանը նպատակաուղղված մասսաների օգտակար նախաձեռնության համար, հնարավորություն ընձեռում նրա յուրաքանչյուր անդամի ակտիվ քաղաքացիական դիրքորոշման դրսևորմանը: Երկրի սոցիալ-տնտեսական առաջադիմությանը համեմատ ավելի ու ավելի է աճում կոլեկտիվի դերը, քանի որ նպատակների ու խնդիրների ընդհանրության հիման վրա տեղի է ունենում անհատի և կոլեկտիվի շահերի մերձեցում: Մի կողմից, առանց սեփական անդամների ակտիվության, կոլեկտիվն ի վիճակի չէ կատարելու իր սոցիալական ֆունկցիաները, մյուս կողմից՝ մարդը կոլեկտիվից դուրս չի կարող դրսևորել իր ստեղծագործական հնարավորությունները, քանի որ այստեղ անհատն ստանում է «միջոցներ», որոնք նրան հնարավորություն են տալիս համակողմանիորեն զարգացնելու իր ձիրքերը, և, հետևաբար, միայն կոլեկտիվում է հնարավոր անձնական ազատությունը» (Նույն տեղը, էջ 78):

Պահանջմունքների՝ որպես մարդկային գործունեության կարևորագույն դրդիչ ուժի, մատերիալիստական ըմբռնումից բխում է, որ անհատի կենսադիրքորոշումը հիմնված է պահանջմունքներով դետերմինացվող օբյեկտիվ գործոնների վրա, քանի որ դրանք մարդու կենսադիրքորոշումն ուղղում են գործնական խնդիրների իրացմանը: Պահանջմունքները բավարարելու ձգտումը հանգեցնում է այն բանին, որ մարդը որոշակի դիրք է գրավում շրջակա սոցիալական միջավայրի նկատմամբ, որի միջոցով նա ստանում է դրանք բավարարելու հնարավորություն:

«Այն ամենը, ինչի համար մարդը պայքարում է,— գրել է Կ. Մարքսը,— կապված է նրա շահի հետ» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, **Երկեր,** հ. 1, էջ 78): Շահերն անհատին դրդում են աշխատել, արտադրել իր համար անհրաժեշտ կենսամիջոցներ և դրանով իսկ ակտիվորեն ազդում գործունեության նպատակների ու միջոցների ընտրության, կենսադիրքորոշման վրա: Շահերը բնութագրում են անձի վերաբերմունքը շրջապատող իրականության նկատմամբ, որը ենթադրում է ոչ միայն նպատակների ընտրություն, այլև այնպիսի որոշումների ընդունում, որոնցում դրսևորվում է առանձին մարդկանց կենսադիրքորոշումը:

Սոցիալիստական հասարակության մեջ արտադրության միջոցների հանրային սեփականության շնորհիվ հաղթահարվում են հակամարտ հակասությունները շահերի միջև, ինչը իր հետ բերում է հակամարտության բացառում նաև մարդկանց դիրքորոշումների միջև:

Կենսադիրքորոշումն անհատի ակտիվ կամ պասսիվ վերաբերմունքն է շրջապատող իրականությանը, սեփական տեղի որոշումը հասարակության, դասակարգի, կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման գործում: Դետերմինացնող պայմանների ու գործոնների փոփոխմամբ փոխվում է նաև կենսադիրքորոշումը: Սակայն դրանց միջև եղած կապը դիալեկտիկական է, քանի որ կենսադիրքորոշումն ակտիվորեն ազդում է նրա ձևավորման օբյեկտիվ պայմանների վրա: Սոցիալիստական հասարակությունը չի կարող հաջող զարգանալ՝ առանց անհատի մեջ ակտիվ քաղաքացիական դիրքորոշում ձևավորելու: Հիշյալ պրոբլեմն առանձնահատուկ հրատապություն է ձեռք բերում սոցիալիզմի զարգացման արդի փուլում, երբ «... պետք

---

ՄՈՔՈՅԱՆ ՀԵՆՐԻԿ ՇԱՎԱՐՇԻ— Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի փիլիսոփայության ամբիոնի ավագ դասախոս:

է վերակառուցվի ամբողջ հասարակությունը և յուրաքանչյուր քաղաքացի իմաստավորի իր դիրքորոշումները, իր հայացքները, իր մոտեցումներն ու գնահատականները» (М. С. Горбачев. «Углублять перестройку, прибавить в работе». М., Политиздат, 1987, стр. 6—7):

Սովետական մարդու հեղափոխական կենսադիրքորոշումը գաղափարական և գործնական պայքար է սոցիալիստական հասարակության կենսագործունեության բոլոր ոլորտների նորացման ու կատարելագործման համար, անհաշտվողականություն վերակառուցման հարաճուն տեմպին հակասող լճացման երևույթների ու թերությունների նկատմամբ: Յուրաքանչյուր սովետական մարդ, որպես անհատ, հասարակական ու պետական գործերի նկատմամբ ունի սեփական փորձ, անձնական կարծիք ու վարքագիծ, գիտելիքների, կրթվածության, ընկալման առանձնահատկության սեփական մակարդակ և քաղաքացիական դիրքորոշում մեր երկրում տեղի ունեցող ամեն ինչի նկատմամբ: «Տնտեսական ռեֆորմն ու ամբողջությամբ վերցրած վերակառուցումը ակտիվորեն առաջին տեղ են մղում մարդուն: Սոցիալական արդարությունը պահանջում է, որ մենք ավելի մեծ ուշադրություն նվիրենք անձի անհատական ընդունակությունների դրսևորմանը, բարոյապես ու նյութապես նշենք նրանց, ովքեր աշխատում են ավելի լավ ու ավելի շատ՝ օրինակ ցույց տալով ուրիշներին» (Մ. Ս. Գորբաչով, **Հոկտեմբերը և վերակառուցումը, հեղափոխությունը շարունակվում է:** «Հայաստան» հրատ., 1987, էջ 47):

Վերակառուցման նկատմամբ կենսադիրքորոշման ընտրությունը ենթադրում է խոր գաղափարական համոզվածություն: Ուստի կուսակցությունը «մշտապես կհոգա այն մասին, որ բոլոր սովետական մարդիկ խորապես տիրապետեն մարքս-լենինյան ուսմունքին, բարձրացնեն քաղաքական կուլտուրան, գիտակցորեն մասնակցեն կուսակցության քաղաքականության մշակմանը և ակտիվորեն կենսագործեն այն» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 229):

Համոզմունքները հսկայական դեր են խաղում անձի կենսադիրքորոշումը սահմանելու գործում, որը պետք է կարողանա իր գործունեությունը կառուցել «... այնպես, ինչպես իրոք պահանջում է կոմունիզմը» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ,** հ. 41, էջ 359): Դրա համար հարկավոր է յուրացնել մարքս-լենինյան տեսության բովանդակությունը, որն անխզելիորեն կապված է սոցիալիստական և կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ: Ընդ որում շատ կարևոր է, որ գիտելիքները դառնան խոր համոզմունք:

Արդի փուլում առանձնապես հրատապ է դառնում կուսակցության վերակառուցման կուրսի ճշտության նկատմամբ համոզվածությունը, քանի որ անհնար է ակտիվորեն մասնակցել վերակառուցմանը՝ վստահ չլինելով նրա օբյեկտիվ անհրաժեշտության ու ճշտությանը: Ուստի կուսակցությունը սոցիալիստական հասարակության կյանքի բոլոր ոլորտների վերակառուցումն սկսեց դրա նպատակների ու խնդիրների պարզաբանումներից: Դա էլ հենց ելակետային է սովետական մարդու կենսադիրքորոշման վերակառուցման համար:

Դոգմատիզմը տեսության մեջ, ինչպես նաև ոչ վաղ անցյալում տեղ գտած լճացման ու նախաճգնաժամային երևույթները կարող էին որոշակի հոռետեսություն և որոշ շփոթվածություն առաջացնել բնակչության մի մասի մեջ, բայց չկարողացան խարխլել նրանց համոզմունքների հիմքերը: Դրանք հաղթահարելու համար ժամանակ է պետք, անհրաժեշտ է իրականացնել արագացում և վերակառուցում: Անհատի ակտիվ դիրքորոշման ձևավորմանը լուրջ նշանակություն է տրվում, քանի որ այն պետք է դառնա բնակչության ամենալայն խավերի գիտակցության և վարքի շարժիչ ուժը:

Անհատի ակտիվ կենսադիրքորոշումը դրսևորվում է հանուն վերակառուցման բարեխիղճ աշխատանքում: Հասկանալով և ընդունելով վերակառուցման անհրաժեշտությունը, անհատը պետք է ակտիվորեն, անձնվիրաբար, իր աշխատանքով դրա գաղափարները մարմնավորի պրակտիկայում: Ստեղծարար աշխատանքն անհատի կենսադիրքորոշման հիմքն է: Վ. Ի. Լենինը, դնելով այն հարցը, թե «ի՞նչ հատկանիշներով մենք պետք է դատենք **ռեալ** անհատների **ռեալ** «խոհերի ու զգացմունքների» մասին», պատասխանում էր. «Հասկանալի է, որ այդպիսի հատկանիշ միայն մեկը կարող է լինել, այն է՝ այդ անհատների **գործողությունները.** և քանի որ խոսքը միայն հասարակական «խոհերի ու զգացմունքների» մասին է, ապա պետք է ավելացնել նաև՝ անհատների **հասարակական գործողությունները,** այսինքն՝ **սոցիալական փաստերը»** (**ԵԼԺ,** հ. 1, էջ 514): Կարևորագույն «սոցիալական փաստն» էլ հենց վերակառուցման գծի նյութականացման ուղղությամբ կատարվող աշխատանքն է:



Ակտիվ կենսադիրքորոշումը նպաստում է աշխատանքի և նյութական բարիքների բաշխման ոլորտում եղած հակասությունների հաղթահարմանը: Այն անհատին թույլ է տալիս հնարավորի սահմաններում հաղթահարելու առաջացող դժվարությունները, քանի որ «... հաստատուն քաղաքական համոզմունքներ և բարոյական սկզբունքներ ունեցող մարդն ամենաանբարենպաստ հանգամանքներում մնում է այնպիսին, ինչպես կա, չի գնում «կենցաղային օպորտունիզմի», խղճի հետ փոխզիջումների ուղիով, չի փնտրում ակտիվ կյանքից խույս տալու եղանակներ» (М. С. Горбачев. «Молодежь — творческая сила революционного обновления». М., Политиздат, 1987, стр. 29):

Բարեխիղճ աշխատանքը, որպես ակտիվ կենսադիրքորոշման բնորոշ գիծ, հսկայական նշանակություն է ստանում, քանի որ ամեն մի աշխատատեղում յուրաքանչյուր մարդու նկատմամբ վերահսկողություն իրականացնելը դժվարին և առայժմ դեռ ոչ միշտ արդյունավետ գործ է: Բարեխիղճ վերաբերմունքն աշխատանքին օգնում է ամրապնդելու գիտակցական կարգապահությունն ու կազմակերպվածությունը: Վ. Ի. Լենինը շեշտում էր, որ «Աշխատանքի նոր կարգապահություն կառուցել..., մարդկանց աշխատանքի ներգրավելու նոր ձևեր ու միջոցներ կառուցել՝ դա շատ տարիների և տասնամյակների աշխատանք է» (**ԵԼԺ,** հ. 40, էջ 383): Վերակառուցման պայմաններում կարգապահություն ասելով անհրաժեշտ է հասկանալ արտադրության բարձր կուլտուրա, տեխնոլոգիական կարգապահություն, արտադրանքի առաքումների պլանների հստակ կատարում և աշխատանքի կարգապահություն (տե՛ս М. С. Горбачев. Избранные речи и статьи, т. 2. М., Политиздат, 1987, стр. 139): Կարգապահության այդպիսի ըմբռնման ու պահպանման դեպքում միայն հնարավոր կլինի լուծել սոցիալիզմի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու խնդիրները: Հենց այդ առումով կարելի է խոսել գիտակցական կարգապահության՝ որպես ակտիվ կենսադիրքորոշման, հատկության մասին:

Արդի պայմաններում մարդկանց կենսագործունեության մեջ նկատելիորեն աճում է բարոյահոգեբանական ազդակների դերը: Քանի որ վերակառուցումը շարունակում է հեղափոխության գործը, այն սոցիալիստական հասարակության բոլոր անդամների բարձր բարոյական պարտքն է: Մյուս կողմից, հասարակական հարաբերությունների հեղափոխական վերափոխումները նպաստում են կոմունիստական բարոյականության սկզբունքների հաստատմանը սոցիալական սուբյեկտների գիտակցության և գործունեության մեջ:

Ակտիվ կենսադիրքորոշում ունեցող անհատի բարոյական սկզբունքն ամենից առաջ կոլեկտիվիզմն է: Սոցիալիստական կոլեկտիվիզմը մարդկանց միջև եղած կապերի սկզբունքորեն նոր ձև է, անհատի օտարացածության հաղթահարման դիալեկտիկորեն հակասական պրոցես, երբ սոցիալականորեն նշանակալին ընկալվում է որպես խոր անձնական: Արտադրության միջոցների հանրային սեփականությունը, անմիջական հասարակական աշխատանքն իր և ընկերների համար ծնում է կոլեկտիվում ապրելու, հասարակական հարցերը նրանց հետ միասին լուծելու ցանկություն: Դա դրսևորվում է փոխադարձ օգնության, աջակցության, փոխադարձ պահանջկոտության մեջ:

Կոլեկտիվիզմն անխզելիորեն կապված է կոմունիստական բարոյականության մարդասիրական էության, մարդու մասին հասարակության հոգատարության հետ: Ակտիվ կենսադիրքորոշումը վեհացնում է աշխատավոր մարդուն, մարդկանց միջև հաստատում համագործակցություն, բարյացակամություն, ազնվություն, պարզություն ու համեստություն: Ակտիվ, հեղափոխական կենսադիրքորոշումը ներգործուն է, նա չի ընդունում այն ամեն բացասականը, ինչը արդի փուլում խանգարում է վերակառուցման պրոցեսին: Այստեղ առաջին պլան են մղվում անհատական կեցության այնպիսի պարամետրեր, ինչպես խոսքի և գործի միասնությունը, ոչ շաբլոն կերպով գործելու ցանկությունը:

Ակտիվ կենսադիրքորոշման անբաժանելի հատկությունն է իր ձեռնարկության, երկրի տիրոջ բարձր զարգացած զգացումը: Առանց այդպիսի զգացումի, որը ցույց է տալիս անհատի կապը, նրա մասնակցությունն այն ամենին, ինչ տեղի է ունենում կոլեկտիվում, հասարակության մեջ, չի կարելի պատկերացնել ակտիվ կենսադիրքորոշման դրսևորում: Կարևոր է նշել, որ տիրոջ զգացումը պարունակում է «տիրոջ»,

«տիրակալի» դիալեկտիկական միասնությունը և պատասխանատվությունը կոլեկտիվի ու հասարակության բախտի համար: Մարդը պետք է ոչ միայն տնօրինի կամ դիտի այն, ինչ իրեն է պատկանում, այլ, իսկ դա պակաս կարևոր չէ, պետք է պահպանի, բազմապատկի կոլեկտիվ և հանրային հարստությունը, նա պետք է լինի խնայող տեր: Տիրոջ փոխկապակցված կողմերից այս կամ այն կողմն ինքնաբավ դարձնելը կամ արհամարհելը կարող են հավասարապես մեծ վնաս հասցնել: «Ժամանակակից գիտելիքներով ու տեխնիկայով զինված մարդն արտադրում է ավելի ու ավելի շատ արտադրանք, իսկ նրա աշխատանքն ավելի ու ավելի սերտորեն է կախված հանրային արտադրության հազարավոր այլ մասնակիցների գործունեությունից: Նման պայմաններում անգամ մեկ բանվորի, ինժեների, գիտնականի անփութությունը կարող է չափազանց լուրջ հետևանքներ ունենալ, հղի է հասարակության համար հսկայական կորուստներով» (Մ. Ս. Գորբաչով, **Հոկտեմբերը և վերակառուցումը. հեղափոխությունը շարունակվում է**, էջ 47—48):

Անհատի ակտիվ կենսադիրքորոշման կարևոր ցուցանիշ են նրա արժեքային կողմնորոշումները: Վերջիններս կոնկրետ բնույթ կրող այս կամ այն սոցիալականորեն նշանակալի արժեքներին ուղղված նպատակային վարքագիծ են: Լինելով հարաբերական՝ դրանք անհատին նպատակամղում են հասարակության, կոլեկտիվի և իր իսկ համար նշանակալի գործունեության: Արդի փուլում սովետական մարդուն հոգեպես վեհացնում են այնպիսի արժեքներ, ինչպիսիք են սոցիալիզմը, աշխատանքը, վերակառուցումը, հասարակական շահերի առաջնությունը անձնականների նկատմամբ և այլն: Դրանք ակտիվացնում են մարդկանց ֆիզիկական և մտավոր ունակությունները՝ լուծելու սոցիալական խնդիրներ:

Պետք չէ ցանկալին ներկայացնել որպես իրական և կարծել, թե արդի պայմաններում սոցիալիստական հասարակության բոլոր անդամներին էլ ներհատուկ է ակտիվ կենսադիրքորոշումը: Վերակառուցման նախնական փուլում այն ներհատուկ է վերակառուցման լոկ «ստախանովականներին» և «աշխույժներին», որոնք խոսքով ու գործով ապացուցում են, որ իրենց կենսադիրքորոշումը նպատակամղված է հասարակական կյանքի բոլոր բնագավառների անվերապահ հեղափոխական նորացմանը: Եվ դարձյալ, ինչպես և սոցիալիզմի զարգացման բոլոր նախորդ փուլերում, սոցիալական նորացման պրոցեսների ավանգարդում եղել և մնում է բանվոր դասակարգը, որն ակտիվ դիրք է գրավում վերակառուցման մեջ:

Բանվոր դասակարգի հետ միասին վերակառուցումը լայնորեն պաշտպանում են նաև սովետական հասարակության մյուս սոցիալական խմբերն ու խավերը: Ակտիվ և ոչ ակտիվ կենսադիրքորոշման միջև եղած հակասությունը կարելի է հաղթահարել պասսիվ կենսադիրքորոշում ծնող հանգամանքներն արմատախիլ անելու ուղղությամբ տարվող նպատակամղված աշխատանքով, մարդկանց գիտակցությունից դուրս մղելով հայեցողության հոգեբանությունը: Սոցիալական օրինաչափությունները իրականացվում են մարդու միջոցով և մարդու ակտիվ մասնակցությամբ, նրա անհատական գիտակցության օգնությամբ, որը որոշվում է հասարակական գիտակցությամբ և առաջանում հասարակական գիտակցության հիման վրա: «Անհատը,— մատնանշում է Կ. Մարքսը,— հասարակական էակ է: Ուստի նրա կյանքի ամեն մի դրսևորում, եթե նույնիսկ այն հանդես էլ չի գալիս կյանքի կոլեկտիվ, ուրիշների հետ համատեղ իրականացվող դրսևորման անմիջական ձևով, հասարակական կյանքի դրսևորումն է և հաստատումը (К. Маркс и Ф. Энгельс. **Соч.**, т. 42, стр. 119): Սրանից հետևում է, որ անհատական գիտակցությունը հասարակական կյանքի և հասարակական գիտակցության դրսևորումն է: Կոլեկտիվ, ինչպես և հասարակական գիտակցությունը, իրենց վրա կրում են անհատական գիտակցության ազդեցությունը: Անհատի վերաբերմունքը կոլեկտիվի, ամբողջ հասարակության նկատմամբ, նրա զգացմունքները, ապրումներն արտացոլվում են կոլեկտիվ գիտակցության մեջ: Ավելին, կոլեկտիվը պարտավոր է հաշվի առնել յուրաքանչյուր կոնկրետ մարդու դիրքորոշումը և այն նկատի ունենալ իր գործունեության մեջ:

Ուսումնասիրման կարիք ունի աշխատավորական կոլեկտիվի առաջնային օղակը՝ արտադրամասը, տեղամասը, բրիգադը: Հավանաբար, այստեղ կարելի է խոսել կոլեկտիվի սկզբնական օղակի գիտակցության մասին: Իհարկե, աշխատավորական կոլեկտիվի առաջնային օղակի գիտակցությունն անմիջականորեն որոշվում է կոլեկտիվ գիտակցությամբ: Եվ, միևնույն ժամանակ, կոլեկտիվի առաջնային բջջի գիտակցությունը հարստացնում է վերջինիս բովանդակությունը: Բացի դրանից, կոլեկտիվի առաջնային բջջի գիտակցությունը դիալեկտիկական միասնության մեջ է գտնվում



անհատական գիտակցության հետ՝ ներգործելով նրա վրա և ներառելով անհատական գիտակցության հետ կապված երևույթները: Աշխատավորական բրիգադը բանվորական կոլեկտիվի սկզբնային բջիջն է: «Հենց այստեղ,— նշում է Մ. Ս. Գորբաչովը,— դրվում է հաջող արտադրական և հասարակական գործունեության հիմքը: Այստեղ է այն բանալին, որպեսզի հուժկու զարկ տրվի մեր դեմոկրատիային, քանի որ արտադրության, խթանման, դաստիարակության ամենամեծ հարցերը կարող է լուծել ինքը՝ կոլեկտիվը: Դրանից է սկսվում հասարակության գործերի կառավարմանը աշխատավորների մասնակցության ընդլայնումը, ինքնակառավարման սկըզբունքների ձևավորումը» (М. С. Горбачев. Избранные речи и статьи. т. 2. стр. 142):

Հաստատվելով կոլեկտիվում, կոլեկտիվ գիտակցության մեջ անհատի հեղափոխական կենսադիրքորոշումը բարձրանում է մինչև դասակարգի մակարդակին, որտեղ նրա ճանապարհին եղած գլխավոր խոչընդոտներն են ձևապաշտությունը, հանդիսամոլությունը, ցուցադրականությունը, ավելորդ աղմկարարությունը, որ կազմակերպում են որոշ անբարեխիղճ ղեկավար աշխատողներ: Նման մոտեցման վնասը անհատի ակտիվ կենսադիրքորոշմանն այն է, որ ցուցադրական ու կեղծ վերաբերմունքը կարող է հանգեցնել ակտիվ կենսադիրքորոշում ունեցող մարդկանց սոցիալական ակտիվության, սոցիալական ոգևորության ու ավյունի մարման: Բացի դրանից, սոցիալական նման սուբյեկտների նկատմամբ ցուցաբերվող կեղծավորությունը հոռետեսության զգացում է ծնում «սպասողական դիրք գրաված» մարդկանց մեջ, ինչը վերջին հաշվով կարգելակի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման պրոցեսը:

Անհատի ակտիվ կենսադիրքորոշման էությունն ու բնույթը վերակառուցման պայմաններում հնարավորություն են ընձեռում հետևություն անելու այն մասին, որ նախ, վերակառուցումը ենթադրում է բուն կենսադիրքորոշման փոփոխություն, նրա վերափոխում հեղափոխական սկզբունքներով: Երկրորդ, սոցիալիստական հասարակության հեղափոխական նորացումը կարող է իրականացվել անհատի ակտիվ կենսադիրքորոշման ձևավորման ու դրսևորման շնորհիվ:

# ԱՅԼԵՎՍ ՆԱՀԱՆՋԻ ՏԵՂ ՉԿԱ

**Ն. ԽԼՂԱԹՅԱՆ**

ԱՅՍՕՐ «ՀԱՅԷԼԵԿՏՐԱՄԵՔԵՆԱ» արտադրամիավորման գլխամասային ձեռնարկությունը՝ Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանը, թողարկում է 500 տիպի էլեկտրական մեքենաներ: Ամեն օր ձեռնարկության դարպասներից դուրս են գալիս երկաթուղային 40 վագոններ՝ բարձված էլեկտրական մեքենաներով ու ագրեգատներով: Դրանք առաքվում են Միության վեց հազար հասցեներով, աշխարհի 60 երկրներ: Եվ եթե Սովետական Հայաստանը էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքով երկրում գրավում է առաջնակարգ տեղ, ապա դրանում մեծ է մեր գործարանի դերը:

Իմ աշխատանքային մկրտությունն ստացել եմ այստեղ՝ գեներատորաշինական արտադրամասում: Երեսունհինգ տարի շարունակ իմ մասնակցությունն եմ բերել էլեկտրական այս մեքենայի արարման գործին: Տարիների ընթացքում ուրախանալու և հպարտանալու առիթներ շատ եմ ունեցել: Հպարտացել եմ, որ հարազատ ձեռնարկությունը մշտապես քայլել է առաջավորների շարքերում, նրա կոլեկտիվի հայրենասիրական նախաձեռնությունների համբավը դուրս է եկել հանրապետության սահմաններից: Եղել են նաև թերություններ, բայց այն, ինչ կատարվեց կոլեկտիվի հետ ընթացիկ հնգամյակի երկրորդ տարում, աննախադեպ էր: Գործարանը տասնյակ միլիոնների հասնող պարտքով փակեց տարին, տխուր ցուցանիշներ գրանցվեցին պայմանագրային պարտավորությունների կատարման, արտադրանքի իրացման, ապրանքային արտադրանքի կատարողականի դիմաց:

Ի՞նչ եղավ, ի՞նչ պատահեց, ինչու՞ առաջավոր ու նախաձեռնող կոլեկտիվը զիջեց իր դիրքերը, թերացավ իր պարտականությունների կատարման մեջ: Ես, իմ գործընկերները հաճախ ենք այս հարցերը տալիս, ցանկանում խորանալ բուն պատճառների մեջ: Չեմ թաքցնում. մեզ ցավ է պատճառում, երբ գործարանի հասցեին քննադատական խոսք է ասվում: Թողարկվող արտադրանքի ցածր որակի և պլանային առաջադրանքները չկատարելու համար մեզ խիստ քննադատեցին ՀԿԿ Կենտկոմի ապրիլյան 1986 թ.և հուլիսյան 1987 թ. պլենումներում: Կարող եմ ասել, որ կոլեկտիվը ճիշտ ընդունեց քննադատությունը:

Որպես արտադրության վետերան, ուզում եմ իմ նկատառումները հայտնել միավորման ծանր վիճակի, թերացման կապակցությամբ: Ինչ խոսք, պատճառները թե՛ ներքին բնույթի են, թե՛ արտաքին: Կուզենայի սկսել վերջինից: Ինձ թվում է, և դա, իրոք, այդպես է, որ ՍՍՀՄ էլեկտրատեխնիկական արդյունաբերության մինիստրությունը լուրջ սխալ է կատարել պլանավորման հարցում: Տասնմեկերորդ հնգամյակում նախատեսված արտադրության ծավալի 27,2 տոկոս աճը էլեկտրամեքենաշինարարները չկարողացան ապահովել և ահա տասներկուերորդի համար վերնից պլանավորում են 50 տոկոս արտադրության ծավալի աճ: Ինչի՞ց ելնելով են մինիստրության ղեկավարները միավորմանը նման պլան պարտադրում: Գուցե նրանք մտածում են, որ կարճ ժամանակում հնարավոր է վերազինել արտադրությունը, ավտոմատացնել և մեքենայացնել այն: Բայց չէ՞ որ նույն մինիստրությունն է մեզ տրամադրում և՛ նոր հաստոցներն ու սարքավորումները, և՛ ֆինանսական միջոցները: Ընթացիկ հնգամյակի անցած ժամանակաշրջանում, օրինակ, զգալիորեն պակաս քանակությամբ ենք ստացել տեխնիկական վերազինման համար նախատեսված սարքավորումները:

Ոչ ճիշտ պլանավորման ցայտուն օրինակ է անցած տարի № 7 արտադրամասին իջեցված առաջադրանքը: Տեսեք, թե ինչ է ստացվում: Տարիներ շարունակ այդ

ԽԼՂԱԹՅԱՆ ՆԱՊՈԼԵՈՆ ԱՐՄԵՆԱԿԻ— «Հայէլեկտրամեքենա» ԱՄ № 9 արտադրամասի մամլող. կուսկոմիտեի բյուրոյի անդամ, Լենինի շքանշանակիր:



արտադրամասը առաջավորի բարի համբավ էր վայելում: Գոհ էին պատվիրատու-
ները նաև նրա թողարկած համալիր տրանսֆորմատորային ենթակայանների որա-
կից: Հնգամյակի առաջին տարում պլանավորված էր և թողարկվեց 841 մեքենա: Եվ
հանկարծ 1987-ի համար մինիստրությունը պլանավորում է 1.700 ենթակայան: Մեկ
տարում արտադրության ծավալի կրկնակի աճ: Չափազանց շատ չէ՞ր այս պլանը
նույն պայմաններում, բանվորների նույն թվաքանակով աշխատող արտադրամասի
համար:

Ինչպես արդեն ասացի, մեզ մոտ դանդաղ է իրականացվում արտադրության
տեխնիկական վերազինումը: Մեր թերացման հիմնական պատճառներից մեկը ար-
տադրամասերի մեքենայացման ու ավտոմատացման ցածր մակարդակն է: Ամենու-
րեք ձեռքի աշխատանքը նկատելի է: Գործարանի շատ հաստոցներ ու սարքավո-
րումներ ծերացել են, ունեն 40 տարվա վաղեմություն, ֆիզիկապես ու բարոյապես
մաշվել են: Իսկ արտադրության տարեցտարի աճող ծավալը ենթադրում է թարմաց-
նել հաստոցային պարկը, զարկ տալ արտադրության ինտենսիվացմանը: Հիշում եմ,
տարիներ առաջ մեր արտադրամասի նեղ տեղերից մեկը համարվում էր գեներա-
տորների լիսեռների պատրաստումը: Գործարանի ղեկավարությունը հարցը դրակա-
նորեն լուծելու համար այլ արտադրամասերի պարտադրեց օգնել մեզ լիսեռների
պատրաստման գործում: Բայց դա խնդրի լուծման լավագույն ուղին չէր: Մեր նեղ
տեղը հարկավոր էր վերացնել մեր արտադրամասի ուժերով: Եվ ահա խնդիր դրվեց
վերազինել մեխանիկական տեղամասը, այն հագեցնել պատճենահանման ծրագրա-
յին կառավարման հաստոցներով: Այլևս մենք դժվարության առջև չկանգնեցինք լի-
սեռների հարցում, դրսից էլ օգնություն չհայցեցինք: Մենք զգացինք նոր տեխնիկայի
ուժը, արտադրության ավտոմատացման ուժը: Կամ մեկ այլ օրինակ: Մեծ ջանքեր
պահանջվեցին դրոշմման գործողությունը մեքենայացնելու համար: Երբ ներդրվեց
«Բակինեց» մակնիշի ավտոմատ մամլիչը, որի միջոցով իրականացվեց գեներա-
տորների ստատորի թիթեղների դրոշմումը գլանափաթույթային թիթեղից, գործա-
րանը տարեկան տնտեսեց 100 տոննա մետաղ:

Ես այս օրինակները բերեցի մեկ անգամ ևս նշելու գիտատեխնիկական առաջ-
ընթացի դերն ու նշանակությունը արտադրության զարգացման, պլանային առաջա-
դրանքների կատարման, խնայողության ապահովման գործում:

Մեր արտադրամասը փաստորեն գործարան է գործարանի մեջ: Սակայն դեռևս
բարձր է ձեռքի աշխատանքի տեսակարար կշիռը, քիչ բան է արվում արտադրու-
թյունը թվածրագրային կառավարման հաստոցներով, ավտոմատ հոսքագծերով հա-
մալրելու համար:

ՄԻԱՎՈՐՄԱՆ ՆԱՀԱՆՋԻ ՊԱՏՃԱՌՆԵՐԻՑ մեկն էլ նյութատեխնիկական ան-
կանոն մատակարարումն է, որի հետևանքով առանձին արտադրամասերի կոլեկտիվ-
ներ հաճախ են տհաճ իրավիճակի մեջ ընկնում: Միայն մեկ օրինակ, անցած տարի
120 հազարի փոխարեն արտադրեցինք 116 հազար հատ «Դեսնա» մակնիշի լվաց-
քի մեքենա: Պատճառը ռելեների պակասն էր: Սա ես ասում եմ մեկ արտադրատե-
սակի կապակցությամբ, իսկ շուրջ 500 տիպի էլեկտրական մեքենաների ու ագրե-
գատների համար ինչքա՞ն կոմպլեկտավորող դետալներ, հանգույցներ, առանձին
նյութեր և հումք է հարկավոր: Այստեղից էլ հետևություն՝ հարկավոր է կոնկրետաց-
նել միավորման թողարկվող արտադրատեսակների ցանկը և հստակություն մտցնել
նրա պրոֆիլում: Արտադրատեսակների չափազանց մեծ բազմազանությունը լուրջ
դժվարություններ է ստեղծում արտադրության ղեկավարման և նյութատեխնիկական
մատակարարման գործում: Գործարանի մասնագիտացման հարցը պետք է շուտա-
փույթ լուծում ստանա:

Այսքանը «դրսի» պատճառների մասին: Սակայն մենք մեր անհաջողությունների
հիմնական պատճառը փնտրում ենք մեր աշխատանքում, մեր գործունեության մեջ:
Այն, որ միավորումում վերակառուցումը դանդաղ է ընթանում, փաստ է: Կան մար-
դիկ, հատկապես արտադրության հրամանատարներ, մասնագետներ, որոնք շատ են
խոսում նորի ու առաջավորի, վերակառուցման մասին, բայց զարմանալիորեն կառ-
չած են հնին, դժվարությամբ են հրաժարվում աշխատանքի՝ իր ժամանակն ապրած
ոճից:

Մեր թողարկած արտադրանքի համար անցած տարի զուր տեղը զգալի
տուգանք վճարեցինք: Ինչու՞, չէ՞ որ այդ գումարը գնում է մեր գրպանից, տուգանքը
մեզ է հարվածում: Եվ հետո մի՞թե հնարավոր չէ աշխատել առանց խոտանի, իսկա-
կան բանվորական խղճով: Մեր արտադրամասում թողարկվող «ԵՍՍ—5» տիպի

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍՆԵՐ

**1988 թ. հունիսի 28-ին XIX համամիութենական կուսակցական կոնֆերանս հրավիրելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումի որոշումը գտնվում է համընդհանուր ուշադրության կենտրոնում: Որքան մոտենում է կուսակցական համաժողովի օրը, այնքան մեծանում է հետաքրքրությունը նրա նկատմամբ: Հանրապետության կոմունիստները, բոլոր աշխատավորները քաղաքական և աշխատանքային ակտիվության պայմաններում են դիմավորում կոնֆերանսը:**

**Տարիներ անց վերականգնվում է կուսակցական կյանքի՝ պատմականորեն ձևավորված դեմոկրատական ինստիտուտներից մեկը: Մինչև այժմ տեղի է ունեցել 18 համակուսակցական կոնֆերանս: Դրանցից յուրաքանչյուրը մի էջ է կուսակցության պատմության մեջ: Եվ այսպես՝ էջ առ էջ:**

**ՌՍԴԲԿ ԱՌԱՋԻՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** տեղի է ունեցել ֆինլանդական Տամմերֆորս քաղաքում, 1905 թ. դեկտեմբերի 12—17-ը: Մասնակցում էր 41 պատգամավոր 26 կուսակցական կազմակերպությունից: Այդ ժամանակ նախատեսվում էր կուսակցության IV համագումարի հրավիրումը, սակայն հեղափոխական իրադարձությունների, երկաթուղայիններին գործադուլների և պատգամավորների մի մասի ձերբակալությունների հետևանքով համագումարի քվորումը չէր ապահովվում: Որոշվեց հրավիրել կոնֆերանս, որը և քննարկեց համագումարի առջև ծառացած խնդիրները: Լսվեցին զեկուցումներ տեղերից, զեկուցում ընթացիկ մոմենտի մասին, Կենտկոմի կազմակերպական հաշվետվությունը, ՌՍԴԲԿ երկու մասերի միավորման, կուսակցության վերակառուցման մասին, ագրարային հարցի, պետական դումայի մասին: Կոնֆերանսը ղեկավարում էր Վ. Ի. Լենինը, որը հանդես եկավ ընթացիկ մոմենտի և ագրարային հարցի մասին զեկուցումներով: Մյուս հարցերի վերաբերյալ զեկուցողներն էին Պ. Ռումյանցևը, Լ. Կրասինը: Կոնֆերանսի ուշադրությունն ուղղված էր առաջին ռուսական հեղափոխության մեջ կուսակցության տակտիկայի մշակմանը, միասնության և համախմբվածության ապահովմանը: Այս կոնֆերանսում առաջին անգամ դեմոկրատական ցենտրալիզմը հռչակվեց որպես կուսակցության կազմակերպական սկզբունք:

**ՌՍԴԲԿ ԵՐԿՐՈՐԴ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** հրավիրվեց 1906 թ. նոյեմբերին, Տամմերֆորսում: Կուսակցության պատմության մեջ այն հայտնի է նաև որպես առաջին համառուսաստանյան: Մասնակցում էր 32 պատգամավոր: Օրակարգը՝ երկրորդ պետական դումայի ընտրական կամպանիան, կուսակցության համագումարի մասին, բանվորական համագումարի մասին, պայքար սևհարյուրակայինների և ջարդերի դեմ, պարտիզանական ելույթների մասին: Զեկուցումներով հանդես եկան բոլշևիկների անունից Վ. Ի. Լենինը, մենշևիկների կողմից՝ Լ. Մարտովը, լեհական սոցիալ-դեմոկրատներից՝ Ա. Վարսկին, Բունդից՝ Աբրամովիչը: Կոնֆերանսում գերակշռություն ունեին մենշևիկները և Բունդը, որոնք հրապարակեցին «18-ի պլատֆորմը»: Վ. Ի. Լենինը նրանց հակադրեց «14-ի պլատֆորմը»: Տարաձայնությունների հիմնական առարկան դումայի ընտրական կամպանիան էր:

**ՌՍԴԲԿ ԵՐՐՈՐԴ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** (երկրորդ համառուսաստանյան) գումարվեց ֆինլանդական Կոտկա քաղաքում, 1907 թ. հուլիսին: Այն հիմնականում նվիրված էր կուսակցության տակտիկական հարցերի քննարկմանը՝ II պետական դումայի ցրման (այսպես կոչված՝ «հունիսերեքյան հեղաշրջում») և III դումայի գումարման կապակցությամբ: Բոլշևիկների կողմից զեկուցումներով հանդես եկան Վ. Ի. Լենինը և Ա. Բոգդանովը, մենշևիկների և Բունդի կողմից՝ Ֆ. Դանը: Կոնֆերանսը հաստատեց դումայի ընտրություններին մասնակցելու լենինյան դիրքորոշումը:

**ՌՍԴԲԿ ՉՈՐՐՈՐԴ ՀԱՄԱՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍՈՒՄ** (Հելսինգֆորս, 1907 թ. նոյեմբեր) Վ. Ի. Լենինը հանդես եկավ «Պետական դումայում սոցիալ-դեմոկրատական ֆրակցիայի տակտիկայի մասին» զեկուցումով: Խնդիր դրվեց դուման օգտագործել բուրժուադեմոկրատական հեղափոխության նպատակների իրականացման համար:



**ՌՍԴԲԿ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀԱՄԱՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ** (Փարիզ, 1908 թ. դեկտեմբեր) հիմնական հարցը արդի մոմենտի և կուսակցության խնդիրների մասին զեկուցումն էր, որտեղ նշվեց կուսակցության ամբողջականությունն ու միասնությունն ամրապնդելու, կուսակցությունը լիկվիդացնելու մենշևիկյան փորձերի և օտզովիստ-ուլտիմատիստների դեմ վճռական պայքար մղելու անհրաժեշտությունը: Առաջնահերթ խնդիր համարվեց անլեգալ կուսակցական կազմակերպությունների կառուցումը և ամրապնդումը, մասսաների հետ կուսակցության կապերի ուժեղացումը:

**ՌՍԴԲԿ ՎԵՑԵՐՈՐԴ (ՊՐԱԳԱՅԻ) ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** տեղի է ունեցել 1912 թ. հունվարին: Ներկայացված էին Ռուսաստանում գործող համարյա բոլոր (ավելի քան 20) կազմակերպությունները, ուստի այն ունեցավ կուսակցության համագումարի նշանակություն:

Կոնֆերանսի օրակարգը ընդգրկում էր 15 հարց: Վ. Ի. Լենինը հանդես եկավ արդի մոմենտի ու կուսակցության խնդիրների, միջազգային սոցիալիստական բյուրոյի և այլ հարցերի վերաբերյալ: Կոնֆերանսը որոշում ընդունեց հրատարակել ամենօրյա լեգալ «Պրավդա» թերթը: Կուսկենտկոմի պաշտոնական օրգան հայտարարվեց «Ռաբոչայա գազետան»: Ընտրվեց բոլշևիկյան Կենտկոմ (Վ. Ի. Լենին, Գ. Կ. Օրջոնիկիձե, Ս. Ս. Սպանդարյան և ուրիշներ): Ի. Վ. Ստալինը և Յա. Մ. Սվերդլովը, որոնք գտնվում էին աքսորում, Կենտկոմի կազմում ընտրվեցին հեռակա կարգով: Կենտկոմի անդամության թեկնածուներ ընտրվեցին Մ. Ի. Կալինինը, Ս. Գ. Շահումյանը: Կոնֆերանսը մենշևիկ-լիկվիդատորներին վտարեց կուսակցությունից և սկիզբ դրեց բոլշևիկների ինքնուրույն կուսակցության կազմավորմանը:

**ՌՍԴԲ(բ)Կ ՅՈԹԵՐՈՐԴ** (ԱՊՐԻԼՅԱՆ) **ԿՈՆՖԵՐԱՆՍԸ,** որը կայացել է 1917 թ. Պետրոգրադում, առաջին լեգալ կոնֆերանսն էր Ռուսաստանում: Օրակարգում դրված էր 12 հարց: Ընթացիկ մոմենտի մասին զեկուցման մեջ Վ. Ի. Լենինը պարզաբանեց իր ապրիլյան թեզիսների դրույթները: Առաջադրվեց «Ամբողջ իշխանությունը սովետներին» լոզունգը: Սահմանվեց կուսակցության քաղաքականությունը հեղափոխության և պատերազմի հարցում, հռչակվեց բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունից սոցիալիստական հեղափոխության անցնելու բոլշևիկների կուրսը:

**ՌԿ(բ)Կ ՈՒԹԵՐՈՐԴ ՀԱՄԱՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** (1919 թ. դեկտեմբեր) տեղի ունեցավ քաղաքացիական պատերազմի ճակատներում ձեռք բերված տպավորիչ հաղթանակների պայմաններում: Վ. Ի. Լենինը հանդես եկավ կոնֆերանսի բացմանը, ինչպես նաև Կենտկոմի քաղաքական հաշվետվությամբ և Ուկրաինայում սովետական իշխանության հարցի մասին: Քննարկված հիմնական հարցերից մեկը սովետական շինարարությունն էր: Որոշումներ ընդունվեցին սովետական ապարատի ամրապնդման և սովետական պետության կառուցման գործում աշխատավորական լայն զանգվածներին առավելագույնս ներգրավելու մասին: Կուսակցության նոր կանոնադրությունում առաջին անգամ սահմանվեց թեկնածուական ստաժ:

**ՌԿ(բ)Կ ԻՆՆԵՐՈՐԴ ՀԱՄԱՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** (1920 թ. սեպտեմբեր) Վ. Ի. Լենինի ներկայացրած՝ Կենտկոմի քաղաքական հաշվետվության հիման վրա խնդիր դրվեց նախապատրաստվել Վրանգելի սպիտակգվարդիական բանակների վերջնական ջախջախմանը: Բանաձև ընդունվեց Սովետական Ռուսաստանի և Լեհաստանի միջև հաշտության պայմանների մասին: Կոնֆերանսը հակահարված տվեց «դեմոկրատական ցենտրալիզմի» հակակուսակցական խմբին, որը հանդես էր գալիս կուսակցական կարգապահության և սովետներում ու արհմիություններում կուսակցության ղեկավար դերի դեմ: Խնդիր դրվեց ծավալել ներկուսակցական դեմոկրատիան, ամրապնդել կուսակցության միասնությունը, պայքար մղել պետական և տնտեսական մարմիններում բյուրոկրատիզմի դեմ:

**ՌԿ(բ)Կ ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀԱՄԱՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ԱՐՏԱԿԱՐԳ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** 1921 թ. մայիսին քննարկեց նոր տնտեսական քաղաքականության փորձը: Նշվեց, որ առևտուրը, պետական արդյունաբերության և գյուղատնտեսության միջև ապրանքափոխանակությունը արդյունաբերության և գյուղատնտեսության վերելքի գլխավոր օղակն են: Խնդիր դրվեց զարկ տալ խոշոր արդյունաբերությանը: «Այժմ,— նշեց Վ. Ի. Լենինը,— գլխավոր ազդեցությունը միջազգային հեղափոխության վրա մենք կատարում ենք մեր տնտեսական քաղաքականությամբ» (**ԵԼԺ,** հ. 43, էջ 412):

**ՌԿ(բ)Կ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՀԱՄԱՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** (1921 թ. դեկտեմբեր) քննարկեց ՆԷՊ-ի պայմաններում երկրի տնտեսության վերականգնման հրատապ խնդիրները: Նշվեց կայուն դրամական համակարգ սահմանելու, ինչպես նաև ոչ դեֆիցիտային բյուջեի անհրաժեշտությունը: Կարևորվեց պետական արդյունաբերական ձեռնարկություններում տնտեսական հաշվարկի արմատավորումը: Խնդիր դրվեց պետու-

թյան ձեռքում ամրապնդել արդյունաբերության հրամանատարական բարձունքները (խոշոր արդյունաբերություն, տրանսպորտ, բանկեր, արտաքին առևտրի մոնոպոլիա և այլն):

**ՌԿ(բ)Կ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ ՀԱՄԱՌՈՒՍԱՍՏԱՆՅԱՆ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** (1922 թ. օգոստոս) քննարկելով հակասովետական կուսակցությունների և հոսանքների մասին Գ. Զինովևի զեկուցումը, նշեց, որ նէպմանական բուրժուազիան նոր պայմաններում փոխել է իր գործողությունների տակտիկան: Որոշվեց մոբիլիզացնել կուսակցության և բանվոր դասակարգի ուժերը բուրժուական և մանրբուրժուական կուսակցությունների ու հոսանքների և դրանց գաղափարախոսության դեմ պայքարելու համար: Ընդունվեց կուսակցության նոր կանոնադրություն:

**ՌԿ(բ)Կ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** (1924 թ. հունվար) քննարկեց տնտեսական քաղաքականության հերթական խնդիրները, կուսակցական շինարարության և միջազգային դրության հարցերը: Զեկուցողների թվում էին Վ. Մ. Մոլոտովը, Ա. Ի. Միկոյանը: Կոնֆերանսը քննարկեց դիսկուսիայի արդյունքները և դատապարտեց տրոցկիստական հակակուսակցական օպոզիցիան:

**ՌԿ(բ)Կ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ ԿՈՆՖԵՐԱՆՍԻ** (1925 թ. ապրիլ) «Կոմինտերնի և ՌԿ(բ)Կ խնդիրները Կոմինտերնի գործկոմի ընդլայնված պլենումի առթիվ» բանաձևը կուսակցության պատմության ամենակարևոր փաստաթղթերից է: Այնտեղ շեշտված է, որ ՍՍՀՄ բանվոր դասակարգը և գյուղացիությունը լիովին կարող են երկրի ներսում հաղթել բուրժուազիային և կառուցել լիակատար սոցիալիստական հասարակարգ: Սոցիալիզմի հաղթանակի պրոբլեմի մյուս կողմը նրա միջազգային ասպեկտն է: Քանի դեռ գոյություն ունի կապիտալիստական շրջապատումը, պահպանվում է զինված ինտերվենցիայի վտանգը: Կոնֆերանսը դատապարտեց պերմանենտ հեղափոխության տրոցկիստական տեսությունը:

**ՀամԿ(բ)Կ ՏԱՍՆՀԻՆԳԵՐՈՐԴ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** (1926 թ. հոկտեմբեր-նոյեմբեր) հաստատեց երկրի ինդուստրացման կուրսը, ի մի բերեց տրոցկիստական-զինովևական օպոզիցիայի դեմ պայքարի արդյունքները: Զեկուցումներով հանդես եկան Ն. Բուխարինը, Ա. Ռիկովը, Մ. Տոմսկին, Ի. Ստալինը:

**ՀամԿ(բ)Կ ՏԱՍՆՎԵՑԵՐՈՐԴ ԿՈՆՖԵՐԱՆՍՈՒՄ** (1929 թ. ապրիլ) հաստատվեց առաջին հնգամյա պլանի վերջնական տարբերակը, որը ներկայացվեց Ա. Ռիկովի, Գ. Կրժիժանովսկու, Վ. Կույբիշևի զեկուցումներում: Քննարկվեցին գյուղատնտեսության զարգացման ուղիները (զեկ.՝ Մ. Կալինին):

**ՀամԿ(բ)Կ ՏԱՍՆՅՈԹԵՐՈՐԴ ԿՈՆՖԵՐԱՆՍՈՒՄ** (1932 թ. հունվար-փետրվար) հաստատվեցին երկրորդ հնգամյա պլանի դիրեկտիվները, հիմնական զեկուցողներն էին Գ. Օրջոնիկիձեն, Ա. Միկոյանը, Ի. Ստալինը, Վ. Մոլոտովը, Վ. Կույբիշևը:

**ՀամԿ(բ)Կ ՏԱՍՆՈՒԹԵՐՈՐԴ ԿՈՆՖԵՐԱՆՍԸ** (1941 թ. փետրվար) նվիրված էր արդյունաբերության զարգացման տեմպերի արագացման ուղիներին, երկրի պաշտպանունակության ամրապնդման խնդիրներին: Զեկուցումով հանդես եկավ Գ. Մալենկովը:

**Ինչպես տեսանք, կոնֆերանսները կոչված են լուծելու կուսակցության առջև ծառացած ընթացիկ և ծագող պրոբլեմները: Դրանց իրավասության մեջ են մտնում համագումարի կողմից քննարկվող գործնականում բոլոր հարցերը՝ ներառյալ նաև կադրայինը:**

**Վերակառուցման երեք տարիներին վիթխարի չափերով ծավալվել են նորացման պրոցեսները, որոնք առնչվում են հասարակության կյանքի բոլոր կողմերին: Արմատապես վերափոխվում է տնտեսական մեխանիզմը, լայնորեն զարգանում են տնտեսական գործունեության նոր ոլորտները՝ կոոպերատիվ շարժումը, անհատական աշխատանքը, ընդլայնվում են դեմոկրատիան և հրապարակայնությունը: Օրակարգի հարց են դարձել փոփոխությունները քաղաքական սիստեմում: Քննարկման են սպասում նաև ազգային հարաբերություններում կուտակված պրոբլեմները:**

**Վերակառուցման յուրաքանչյուր քայլը պահանջում է արժեքների խոր իմաստավորում և վերագնահատում, արդեն կուտակված փորձի ընդհանրացում, տնտեսական և սոցիալական առաջադիմության նոր ուղիների որոնում: Այս բոլոր խնդիրները ծառացած են կուսակցական առաջիկա կոնֆերանսի առջև:**



# ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՈՐՄԱՆԵՐԸ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆ

**Մ. ԹՈՒՄԱՍՅԱՆ**

ԵՐԿՐԻ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ զարգացման արագացման ստրատեգիան պահանջում է իրականացնել վճռական ու նպատակամղված անցում տնտեսավարման ինտենսիվ մեթոդների: Ելնելով դրանից և հենվելով ժողովրդական տնտեսության մեջ կուտակված լայնամասշտաբ փորձի վրա՝ ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը և ՀԱՄԿԽ-ը մի շարք որոշումներ են ընդունել աշխատավարձի կազմակերպումը կատարելագործելու և ժողովրդական տնտեսության արտադրական ճյուղերի աշխատողների նոր տարիֆային դրույքներ և պաշտոնեական հաստիքներ մտցնելու մասին: Մեր էկոնոմիկայի պատմության մեջ առաջին անգամ աշխատավարձի կազմակերպման կատարելագործումը, նյութական արտադրության բանվորների և ծառայողների տարիֆային դրույքներն ու պաշտոնեական հաստիքները կսահմանվեն իրենց՝ ձեռնարկությունների, միջոցների հաշվին: Եվ դա ժամանակի օբյեկտիվ պահանջն է: Աշխատանքի վարձատրության կազմակերպման նոր համակարգը ամրագրված է պետական ձեռնարկության մասին օրենքում: Այն, անկասկած, կնպաստի կոլեկտիվի ստեղծագործական և աշխատանքային ակտիվության բարձրացմանը, որի պարտադիր պայմանն է վարձատրության կապակցումը կոլեկտիվի և նրա յուրաքանչյուր անդամի աշխատանքի վերջնական արդյունքների հետ: Իսկ դա սոցիալական արդարության հասնելու հիմքն է:

Կառավարչական մարմիններում, ինչպես նաև գիտության բնագավառում կուտակված փորձը ցույց է տալիս, որ փաստորեն «Յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքը հետին պլան էր մղվել՝ ըստ աշխատանքի բաշխիչ մեխանիզմի անկատարության պատճառով: Թեև պարբերական գրականության մեջ հաճախ գիտնականները գրում են այն մասին, որ աշխատավարձի կոլեկտիվ բաշխումը, հաշվի առնելով աշխատանքային մասնակցության գործակցի կիրառումը, թույլ է տալիս ասելու, որ բաշխման մեխանիզմը լիովին կատարում է իր ֆունկցիան, սակայն դա վերաբերում է պրոբլեմի լոկ տեսանելի մասին: Մինչդեռ, ըստ էության, բրիգադի աշխատավարձի ֆոնդի ամբողջական մեծությունը, որը պետք է բաշխվի նրա անդամների միջև, կազմվում է ըստ աշխատանքային ծախսումների նորմատիվների, որի մի բաղադրամասն են «շահավետ նորմաները»: Հետևաբար, աշխատանքային մասնակցության գործակցի կիրառումը չի բացառում շահավետ և ոչ շահավետ նորմաների առկայության փաստը: Մանավանդ, եթե նախկինում աշխատավարձի ցուցակներում առանձնանում էին «ընտրյալները» շահավետ նորմաներով իրենց բարձր վաստակներով, ապա աշխատանքի բրիգադային կազմակերպման ու վարձատրության դեպքում այդ գործոնը քողարկվում է և դառնում անտեսանելի:

Ինչ խոսք, շատ ձեռնարկություններում (միավորումներում) գործում է «ձգելու» կենսունակ տարրը: Իսկ պարգևավճարները, ոչ մեծ չափերի բազմաթիվ հավելավճարները դարձել են աշխատավարձի հավելումներ: Հաճախ հնարավոր չէ պարզել կոնկրետ կապը վերջնական արդյունքի հետ: Այստեղից էլ տխրահռչակ «հավասարեցումը», որն արգելակում է ինտենսիվ առաջընթացը: Ուստի աշխատավորների մի

ԹՈՒՄԱՍՅԱՆ ՄԵՐՈՒԺԱՆ ԱՂԱՍԻԻ— ՍՍՀՄ պետաշխկոմիտեի աշխատանքի ինստիտուտի ավագ գիտաշխատող, տնտեսագիտության թեկնածու:

որոշակի մասը վարժվել է այն բանին, որ աշխատավարձի ստեղծված մակարդակը
իրեն միանգամայն ձեռնտու է, քանի որ այն կարելի է ստանալ առանց մեծ դժվա-
րության: Այժմ միանգամայն պարզ է, որ նախքան տարիֆային նոր դրույքներ և
պաշտոնեական հաստիքներ մտցնելը, անհրաժեշտ է կարգավորել աշխատավարձի
բաշխիչ մեխանիզմը, աշխատանքի նորավորումը, հավելավճարների ու պարգևա-
վճարների համակարգերը կատարելագործելու միջոցով՝ դրանք կապակցելով յու-
րաքանչյուր աշխատողի, կոլեկտիվի վերջնական արդյունքի հետ:
Անհրաժեշտ է կարգավորել որակավորման բարձրացման համակարգը, քանի
որ ժամանակավոր բանվորների աշխատանքի վարձատրությունը կատարվում է նրանց
շնորհված որակավորման կարգի համաձայն: Սակայն, չնայած վերջին տարիներին
բանվորների որակավորման նկատելի բարձրացմանը, տվյալ պրոցեսի ազդեցությունը
աշխատանքի որակի վրա, հատկապես ձեռնարկությունների օժանդակ արտադրու-
մասերում, աննշան էր: Ահա սա է այն գործոնների համալիրը, որոնք կազմում են
աշխատավարձի բաշխիչ մեխանիզմի հիմքը: Ինչ վերաբերում է աշխատանքի պայ-
մաններին ու ծանրությանը, դրանք միշտ էլ կարգավորվել են պետության կողմից:
Ըստ աշխատանքի բաշխման մեխանիզմի կատարելագործման ուղղությամբ ձեռ-
նարկվող միջոցների համակարգում վճռորոշ դերը պատկանում է նորմավորմանը:
Սակայն մի՞թե աշխատանքային ծախսումների նորմաները ամենուրեք գիտականո-
րեն հիմնավորված են: Իհարկե, ոչ: Թեև արդյունաբերության մեջ վիճակագրական
տվյալներով տեխնիկապես հիմնավորված նորմաների տեսակարար կշիռը կազմում
է 90 տոկոս՝ 1976 թվականի 79,5 տոկոսի դիմաց, իսկ դրանց գերակատարման մա-
կարդակը համապատասխանաբար՝ 126 և 118,8 տոկոս, պարզ է դառնում, որ աշխա-
տանքային ծախսումների նորմաների այդպիսի բնութագիրը չի համապատասխանում
իրականությանը: Նման դրություն ստեղծվել է, նախ և առաջ, աշխատանքի նոր-
մատիվների բնութագրման՝ գոյություն ունեցող հաշվետվությունների ձևերի հիմնա-
վորված չլինելու պատճառով: Դեռ ավելին, արդյունաբերական ձեռնարկության ար-
տադրության նորմաների կատարման և աշխատանքի նորմավորման վիճակի մասին
հաշվետվության վիճակագրական նոր ձևն անգամ կապակցված չէ աշխատանքի
արտադրողականության հետ: Մյուս պատճառը աշխատանքի չափի նկատմամբ
կենտրոնացված վերահսկողության բացակայությունն է մինիստրությունների և գերա-
տեսչությունների կողմից:
Պարզ է, որ հետպատերազմյան չորս տասնամյակի ընթացքում գիտատեխնիկա-
կան առաջադիմությունը հսկայական փոփոխություններ է մտցրել աշխատանքի
բնույթի ու բովանդակության մեջ: Սակայն աշխատանքի նորմավորման վերաբերյալ
հաշվետվություններ կազմելու և դրանց վերլուծության սկզբունքներն ու մեթոդները
մնացել են իրենց նախնական ձևով՝ բացառությամբ դրանց պարզեցումից: Ուստի
աշխատանքի նորմավորման ազդեցությունը արտադրողականության աճի վրա
հասցված է նվազագույնի: Տվյալ պրոբլեմը բարդանում է նաև նրանով, որ աշխա-
տանքային ծախսումների նորմաները դեռևս չեն վկայում դրանց առաջադիմականու-
թյան մասին, քանի որ, ըստ էության, տեխնիկապես հիմնավորված նորմաները
մշակվում են արտադրանքի պատրաստման կատարյալ և ոչ կատարյալ տեխնոլո-
գիայի բազայի վրա: Այստեղից էլ՝ կարճ ժամանակամիջոցում նորմաների մի մասի
անցումը հնացածների շարքը: Ցավոք, բուն ձեռնարկությունում անգամ հաշվառում
չկա, թե աշխատանքային ծախսումների քանի նորմատիվ է մշակվել ոչ կատարյալ
տեխնոլոգիայի բազայի վրա: Մենք չգիտենք նաև նորմաների այն ընդհանուր քա-
նակը, որտեղ օբյեկտիվորեն կամ սուբյեկտիվորեն կիրառվում են իջեցնող գործա-
կիցներ: Մանավանդ, ահա արդեն 40 տարի է, ինչ մինիստրությունները սահմանում
են տեխնիկապես հիմնավորված նորմաների արմատավորման ամենամյա առաջա-
դրանքներ, որի հետևանքով այդ նորմաների քանակն աճում է դրանց գերակատար-
ման աստիճանի աճի հետ միաժամանակ: Արտադրության նորման 125 և ավելի
տոկոսով գերակատարելու դեպքում աշխատանքի արտադրողականությունը գերա-
կատարվում է միայն 1—2 տոկոսով, իսկ երբեմն էլ այդ ցուցանիշի կատարումը հա-
վասար է լինում հազիվ 97—100 տոկոսի:
Ներկայումս տեղի է ունենում նորմաների քանակության չափազանց մեծ ուռճա-
ցում: Միայն արդյունաբերության մեջ՝ մոտ մեկ միլիարդ, որ երբեմն անհասկանալի
է, թե մի՞թե այդ բոլոր նորմաները գործող են: Բացի դրանից 1960 թվականից,
այսինքն առաջին տարիֆային ռեֆորմից հետո, անիրավացիորեն մոռացության է
տրվել գործող նորմաների միասնականացում անցկացնելու պրակտիկան հատկապես





արտադրության մանր սերիանոց և միանվագ տիպերի համար: Սակայն մինիստրությունների ու գերատեսչությունների իրավասու մարմինները համառորեն լռություն են պահպանում: Անհրաժեշտ է վերականգնել այդ պրակտիկան, քանի որ վերջինս լավ օժանդակ միջոց է աշխատանքի նորմավորումը բարելավելու գործում:

Այսպիսով, կարելի է ընդգծել ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքի նորմավորման կառավարման գիտականորեն հիմնավորված միջճյուղային մեթոդիկայի մշակման անհրաժեշտությունը: Դրա բացակայության հետևանքով կենտրոնական մարմինների կողմից 30 տարում հրատարակված բազմաթիվ որոշումներ մնացել են թղթի վրա կամ կատարվել են մասնակիորեն: Հայտնի է, որ առանց ամուր հիմքի կառուցված շենքը արագ փուլ է գալիս՝ թողնելով խղճուկ հետքեր:

Շատ հեղինակներ կենտրոնական մամուլում առաջարկում են աշխատանքի նորմաները վերանայել հնգամյակում երկու անգամ, այսինքն այդ պրոցեսը կապակցում են ատեստավորման և աշխատատեղերի ռացիոնալացման հետ (տե՛ս «Պրավդա» թերթը, 1987 թվականի հունվարի 5, Վ. Շիրոկովի «Աշխատավարձը վաստակել» հոդվածը): Սակայն տեղին է ասել, որ աշխատատեղերի ռացիոնալացման պրակտիկան եղել ու մնում է որպես անընդմեջ պլանաչափ պրոցես: Ուստի սխալ սահմանված և բարոյապես հնացած աշխատանքի նորմատիվների վերանայումը նպատակահարմար է մշտապես իրականացնել սահմանված օրենքներին համապատասխան:

Ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքային ծախսումների կառավարվող նորմատիվներ ստեղծելու նպատակով անհրաժեշտ է անցկացնել արտադրության (ժամանակի) գործող նորմաների համապետական ցուցակագրում՝ դրանց միաժամանակյա խոշորացմամբ: Այդպիսի աշխատանք կատարելու համար բազա կա, քանի որ արդյունաբերության մեջ արդեն ստեղծվել են համընդգրկող բրիգադներ, որոնք աշխատում են միասնական կարգագրով, կազմակերպված են բրիգադային համալիրներ, այսինքն՝ աշխատանքների որոշակի մի կոմպլեքս ամրացված է բրիգադի անդամներին և այլն: Այս ամենը հնարավորություն է ստեղծում մեծ չափով պակասեցնելու աշխատանքի գործող նորմաների քանակը:

Մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է հրաժարվեն աշխատանքի նորմավորման զանազան առաջադրանքների սահմանման ավանդական մեթոդներից: Ուստի ենթակա ձեռնարկությունների համար առաջադրանքներ սահմանելիս պետք է հաշվի առնել գործերի փաստական վիճակը: Ընդ որում կարևոր է խիստ վերահսկողություն սահմանել առաջադրանքների կատարման նկատմամբ: Վերադաս մարմինների հաստատած հանձնարարականում պարունակվում են ի մի բերված երկու մեծություններ՝ աշխատանքի արտադրողականության և արտադրության նորմաների կատարման աստիճանները: Այս դեպքում առաջին ցուցանիշը մյուս հավասար պայմաններում փոխադարձաբար կախման մեջ պետք է լինի երկրորդից: Այդ դեպքում աշխատավարձը ևս, անկասկած, վաստակված կլինի:

Ահա արդեն 20 տարի է, ինչ մենք մեր գործնական աշխատանքում միասնական մոտեցում չունենք նորմավորողների շտաբի աշխատանքի նկատմամբ: Որոշ ձեռնարկություններում նրանք ենթարկված են աշխատանքի և աշխատավարձի բաժնին, մյուսներում՝ տեխնոլոգիական բաժնին: Բացի դրանից, մի տեղ նորմավորողները կենտրոնացված են այս կամ այն բաժնում, մի այլ ձեռնարկությունում՝ նրանք ցրված են արտադրամասերում՝ կրկնակի ենթակայությամբ, այսինքն՝ տեխնոլոգիական բաժնի պետին և արտադրամասի պետին: Մանավանդ, որոշ դեպքերում նորմավորողի պարգևատրումը կատարվում է ըստ արտադրամասի ցուցանիշների, մյուս դեպքերում՝ այս կամ այն բաժնի ցուցանիշների համաձայն: Դրա հետևանքով աշխատանքի նորմավորման բաժնի աշխատողներն ապրում են միայն իրենց արտադրամասի (տեղամասի) շահերով: Իսկ դա շահավե՞տ է արդյոք ձեռնարկության ամբողջ կոլեկտիվին, պետությանը, դժվար է ասել: Ներկայումս նորմավորողների աշխատանքի գնահատման ստեղծված պրակտիկան սահմանափակվում է հիմնականում աշխատած ժամանակի նկատմամբ սահմանվող վերահսկողությամբ, որը հանգում է ներքին կարգուկանոնի պահպանման հաշվառումով (հատկապես ժամանակավոր բանվորների համար): Սակայն աշխատաժամանակը, լինելով աշխատանքի չափի չափանիշ, չի արտացոլում աշխատանքի լարվածության մեջ եղած տարբերությունները, այսինքն՝ լրիվ պատկերացում չի տալիս տվյալ հերթափոխի, օրվա ընթացքում աշխատողների ծանրաբեռնվածության մասին՝ կոնկրետ արդյունքների ստացման տեսակետից: Օրինակ, նորմավորողի աշխատանքի կիրառման գոտին է

տանքի վարձատրության նոր պայմանների փոխադրման սկզբունքները հիմնված են շչոկինյան փորձի վրա: Սակայն ավելորդ չէ հիշեցնել, որ շչոկինյան մեթոդի նախահայրը եղել է աշխատանքի նորմատիվային-գործարքային վարձատրությունը, որը մշակված է եղել ձեռնարկության նորոգման արտադրության համար դեռևս 1936 թվականին և հրապարակվել է 1939 թվականին: Այն տարիներին ևս չէր բավականացնում աշխատուժը, սարքավորումներն արդեն մաշվել էին, նորոգողներն էլ անհրաժեշտ որակավորում չունեին: Այդ պայմաններում նորմատիվային-գործարքային վարձատրության համակարգը պատվով կատարեց իր ֆունկցիան: Աշխատանքի այդպիսի վարձատրության գլխավոր պայմանն էր՝ նորոգման նորմատիվային ծավալի իրականացումը, որն ապահովում է սարքավորումների աշխատունակ վիճակը, նյութական, էներգետիկ, ֆինանսական և աշխատանքային բոլոր ռեսուրսների ռացիոնալ ծախսումը: Այդ դեպքում տեղի էր ունենում նորոգման աշխատանքների արժեքի պլանաչափ իջեցում, միաժամանակ պակասեցվում էր սարքավորումների հիմնական նորոգումների քանակը: Նորոգող բանվորների աշխատավարձի ֆոնդը կազմվում էր աշխատանքի նորմատիվային ծավալներից և նորոգումների որակական կատարման համար պարգևավճարներից: Հաստոցը նորոգողների մեղքով ժամանակից շուտ շարքից դուրս գալու դեպքում՝ աշխատանքը կատարվում էր անվճար, իսկ լրացուցիչ ժամանակը կրկնակի նորոգման համար հաշվարկվում էր որպես գերպլանային պարապուրդ և պարգևավճար չէր վճարվում: Հետևաբար, սարքավորումների շահագործման միջնորոգման ժամանակաշրջանները պահպանվում էին սահմանված նորմատիվների սահմաններում: Դա նպաստում էր աշխատանքների ավելի որակյալ կատարմանը:

Ընդ որում աշխատավարձի ֆոնդի նորմատիվային մակարդակը չէր փոփոխվում բանվորների թվաքանակի համեմատ, պայմաններ էին ստեղծվում նորոգող բանվորների ավելի փոքր քանակով աշխատանքի նորմատիվային ծավալների կատարման համար: Այդպիսով լուծվում էին աշխատանքային ռեսուրսների հարցերը, բարելավվում էր նորոգման արտադրության էկոնոմիկան, բարձրանում էր նորոգող բանվորների աշխատանքի արտադրողականությունը, բարելավվում էր հիմնական ֆոնդերի տեխնիկական վիճակը: Սակայն անցան տարիներ, 1961 թվականից օժանդակ ծառայությունների բանվորներին մասսայաբար աշխատանքի ժամանակային-պարգևային վարձատրության փոխադրելու կապակցությամբ մեծացել է նորոգող բանվորների թվաքանակը, ընկել նրանց աշխատանքի արտադրողականությունը, համապատասխանաբար աճել է նաև նորոգման աշխատանքների արժեքը: Այնուհետև, կրկին վառվում է աշխատանքային ռեսուրսների ազդանշանային կարմիր լույսը, և նորից տեղի է ունենում հակառակ պրոցես՝ ժամանակային-պարգևայինից փոխադրում են նորմատիվ-գործարքային վարձատրության: Բայց արդեն աղճատված ձևով: Այսինքն, ինչ-որ մեկի թեթև ձեռքով նորոգող բանվորների աշխատավարձի ֆոնդը սկսեցին ուղղել՝ բրիգադներում բանվորների թվաքանակի համեմատ: Դրա հետևանքով պրակտիկայում հայտնվեց աշխատանքի նորմատիվային-գործարքային վարձատրության չորս տարբերատեսակ: Մեծ մասամբ աշխատավարձի ուղղակի բարձրացմամբ՝ ավելի քիչ հատույցով: Այդ պատճառով աշխատանքի վարձատրության այս ձևի արդյունավետությունն իր նախնական վիճակում ավելի բարձր էր: Պատճառը մեկն է. մինչև այժմ աշխատանքի վերաբերյալ իրավաբանական տեղեկատուներում բացահայտված չեն աշխատանքի այդ վարձատրության էությունն ու հիմնարար մոմենտները, նպատակն ու նշանակությունը ձեռնարկությունների նորոգման արտադրության զարգացման տարբեր փուլերում: Ըստ երևույթին, իրավասու մարմինները պետք է իրենց ծանրակշիռ խոսքն ասեն տվյալ հարցի մասին: Որքան շուտ, այնքան լավ: Առայժմ պարզ է մի բան, որ օժանդակ արտադրության խոր ռեզերվների օգտագործման գործիք է «օրինածին» նորմատիվային-գործարքային վարձատրությունը: Ներկայումս ՍՍՀՄ աշխատանքի պետական կոմիտեի մարմիններում չկա որևէ բաժին, սեկտոր, գոնե աշխատողների մի խումբ, որը մշտապես զբաղվեր նորոգողների աշխատանքի կազմակերպման ու վարձատրության հարցերով: Այդ պատճառով էլ ձեռնարկությունների նորոգման արտադրության կարիքների համար մեթոդական և այլ նյութերի հրապարակման միջին ժամկետը հասնում է 10—15 տարվա: Մեզ թվում է, բանվորների տվյալ թվաքանակի սահմաններում հիմնական ֆոնդերի նորոգման սպասարկման մասնագիտացված ծառայությունների ստեղծումն արդարացված կլինի:



Նորոգման արտադրության էկոնոմիկայի կատարելագործման մյուս ուղղությունն է նրա տեխնոլոգիական խիստ կանոնակարգումը՝ տիպային տեխնոլոգիական պրոցեսների կիրառումը հիմնական և միջին նորոգումներ կատարելիս: Այդ գործոնի մեջ թաքնված են հսկայական ռեզերվներ: Տիպային տեխնոլոգիական պրոցեսների լայն կիրառումը հնարավորություն կտա կարճ ժամանակամիջոցում փոխել աշխատանքի սակավ արտադրողական եղանակները, նախատեսել ձեռքի աշխատանքների մեքենայացում, հատուկ սարքերի և ռացիոնալ գործիքների օգտագործում, որոնց շնորհիվ կբացառվեն նորոգման համար բնորոշ աշխատանքները: Դա կհանգեցնի դրանց որակի շեշտակի բարելավման և աշխատարարության իջեցման. այդ դեպքում չենք զբաղվի ճեղքերը կարկատելով, այլ կկատարենք բարեխիղճ, լավ աշխատանք:

Ներկայումս ձեռնարկությունների նորոգման արտադրության մեջ բանվորների թվաքանակը տնտհաշվարկային բրիգադներում կազմում է մոտ 6 տոկոս, իսկ բրիգադային կապալում մեկ տոկոսից էլ պակաս, թեպետ նորոգման բնագավառում աշխատանքի բրիգադային կազմակերպումը լայնորեն տարածված է եղել դեռ պատերազմից առաջ: Դա թելադրված է նրանց աշխատանքի բնույթով: Սակայն տվյալ պրոցեսի հետագա զարգացումը գտնվում է լճացման վիճակում: Չէ որ խոսքը տընտհաշվարկի ընդհանուր արմատավորման մասին է՝ բրիգադի մակարդակով, կապալի արմատավորումը տեղամասում, արտադրամասում, ինքնաֆինանսավորման համակարգը ձեռնարկությունների, միավորումների և ավելի բարձր մակարդակով: Ահա մեր անսպառ չօգտագործված ռեզերվները: Իրոք, ի՞նչն է խանգարում մեզ՝ գործի դնելու առկա հնարավորությունները հասարակության և մեր իսկ բարօրության համար: Սա բյուրոկրատական այն ապարատի մի մասն է, որը լավ զինված է «արդարացման ու ժխտման» ձևերով ու մեթոդներով՝ հանուն անձնական բարեկեցության: Պահպանողականությունն արդարացնելու համար հանդես են բերվում հազարավոր փաստարկներ, արագացման հեղափոխական մեթոդները ժխտվում են քողարկված եղանակներով՝ իրենց «գործակից» դարձնելով հասարակ աշխատանքով զբաղված և բարձր վարձատրություն ստացող անտարբեր մարդկանց: Ռևիզորները նրանց մասին չգիտեն, բայց կոլեկտիվից թաքցնել հնարավոր չէ: Ուստի աշխատանքի վարձատրության նոր պայմանների անցնելուն հարկավոր է մասնակից դարձնել ամբողջ կոլեկտիվին: Բացասական երևույթները հնարավոր է արմատախիլ անել միայն ամբողջ կոլեկտիվի ակտիվ ու ստեղծագործական որոնումներով:

---

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԸ

Ռ. ՂԱՆԹԱՐՉՅԱՆ
Հ. ՀԱԿՈԲՅԱՆ
Ա. ՄԱՐԿՈՍՅԱՆ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ արդյունավետության համակողմանի
բարձրացումը և այդ հիման վրա նրա ինտենսիվացումը պահանջում են
արտադրության բոլոր ռեսուրսները օգտագործել ավելի խնայողաբար: Դա պայմա-
նավորված է նրանով, որ ներկայումս երկրի ժողովրդական տնտեսության մեջ ներ-
գրավված են խոշոր չափերի հասնող արտադրական ռեսուրսներ: Բավական է նշել,
որ ՍՍՀՄ ազգային հարստության բաղկացուցիչ մասը կազմող հիմնական ֆոնդերը,
որոնք հանդիսանում են աշխատանքի միջոցների նյութաիրային ձևը, 1986 թ. վեր-
ջին կազմել են 2,47 տրիլիոն ռուբլի կամ ամբողջ ազգային հարստության 65 տոկո-
սը: Սովետական Միությունը արտադրանքի մի շարք կարևոր տեսակների (նավթ,
գազ, չուգուն, պողպատ, երկաթահանք, տրակտորներ, հանքային պարարտանյու-
թեր) թողարկմամբ աշխարհում գրավում է առաջին տեղը: Սակայն մեզ մոտ, ազ-
գային եկամտի միավորի հաշվին, հումքի, վառելիքի և էներգիայի ծախսումները ա-
վելի բարձր են, քան մի շարք զարգացած կապիտալիստական երկրներում: Այդ
պատճառով էլ ներկայումս կարևոր նշանակություն են ստանում արտադրության մեջ
ընդգրկված ռեսուրսների արդյունավետ օգտագործումն ու միավոր ռեսուրսից առա-
վելագույն հատույցի ստացումը: Այդ պահանջն ավելի հրատապ է դառնում հասա-
րակական արտադրության ինտենսիվացման և արդյունավետության բարձրացման
պայմաններում: Երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու կուսակցու-
թյան կուրսը նախատեսում է արտադրական պոտենցիալի բոլոր բաղկացուցիչ մա-
սերի և հատկապես հիմնական արտադրական ֆոնդերի, նյութական ռեսուրսների և
վերջիններիս կազմի մեջ մտնող երկրորդային ռեսուրսների արդյունավետ օգտա-
գործումը:

ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումում Մ. Ս. Գորբաչովը նշեց. «Մենք
փորձով գիտենք, որ հենց ճյուղերի կյանքում են ծագում ժողովրդատնտեսական խո-
շոր պրոբլեմները: Հենց այդտեղ են ամենից շատ թերացումներ լինում, որոնց պատ-
ճառով մեծ կորուստներ ենք կրում: Բայց հենց այստեղ էլ թաքնված են նաև աշխա-
տանքի բարելավման մեծ ռեզերվներ»:

Հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործման արդյունավետության գնա-
հատման մի շարք ցուցանիշների թվում գլխավորը ֆոնդահատույցն է: Ժողովրդա-
կան տնտեսության մասշտաբային զարգացման պայմաններում զգալիորեն մեծա-
նում է ֆոնդահատույցի նշանակությունը: Այսպես, երկրի մասշտաբով արտադրա-
վին կատարում է իր ֆունկցիան, սակայն դա վերաբերում է պրոբլեմի լոկ տեսանե-
ծեք է 15 մլրդ լրացուցիչ արտադրանքի, իսկ արդյունաբերությունում՝ 7 մլրդ ռուբ-
լու: Մեր հանրապետությունում այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմում
են 110 և 54 մլն ռուբլի:

Վերջին տասնամյակում հանրապետության արդյունաբերության մեջ կատար-
ված կապիտալ ներդրումների հսկայական ծավալը պայմանավորեց նրա հիմնական
արտադրական ֆոնդերի անընդհատ ավելացում, որը, սակայն, չուղեկցվեց թողարկ-

ՂԱՆԹԱՐՉՅԱՆ ՌՈՒԲԵՆ ՍՈՒՐԵՆԻ— ՀՍՍՀ պետագրոարդի ԳԱՄ-ի սեկտորի վարիչ:
ՀԱԿՈԲՅԱՆ ՀԱՅԿ ՌԱԶՄԻԿԻ— ՀՍՍՀ պետագրոարդի ԳԱՄ-ի սեկտորի վարիչ:
ՄԱՐԿՈՍՅԱՆ ԱՇՈՏ ԽԱՉԱՏՈՒՐԻ— ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի գիտաշխատող:



վող արտադրանքի ծավալի մեծացմամբ: Հանրապետության արդյունաբերության
հիմնական ֆոնդերի աճը 2,9 տոկոսով գերազանցել է համախառն արտադրանքի
աճին: Իսկ առանձին ճյուղերում, ինչպես օրինակ, քիմիական և նավթաքիմիական
արդյունաբերությունում, այն կազմել է 45,5, անտառային և փայտամշակման, շի-
նանյութերի, թեթև արդյունաբերության մեջ՝ 50—75 տոկոս: Դա հանգեցրել է հան-
րապետության ինչպես արդյունաբերության, այնպես էլ նրա առանձին ճյուղերի ֆոն-
դահատույցի մակարդակի իջեցման: Այսպես, 1985 թ. արդյունաբերության մեջ ֆոն-
դահատույցը կազմել է 1970 թ. մակարդակի 86,1 տոկոսը, այդ թվում՝ քիմիական և
նավթաքիմիական արդյունաբերության մեջ 68,1, անտառային և փայտամշակման
ճյուղում՝ 79,6, շինանյութերի արդյունաբերության մեջ՝ 54,7, թեթև արդյունաբերու-
թյան մեջ՝ 80,7, սննդի արդյունաբերությունում՝ 64,7 տոկոս: Արդյունաբերության և
նրա առանձին ճյուղերի ֆոնդահատույցի մակարդակի իջեցումը վկայում է այն մա-
սին, որ նշված հիմնական արտադրական ֆոնդերն օգտագործվել են անբավարար:
Դա պայմանավորված է եղել մի շարք օբյեկտիվ և սուբյեկտիվ պատճառներով:

Առաջինների մեջ կարելի է առանձնացնել հիմնական ֆոնդերի հարաբերական
թանկացումը, որը հանգեցնում է ֆոնդահատույցի մակարդակի արհեստական իջեց-
ման: Այսպես, տեքստիլ արդյունաբերությունում ԱՏ—120 Մ մակնիշի ավտոմատ
գործող հաստոցների արտադրողականությունը մեխանիկական գործող հաստոցների
նկատմամբ բարձր է 37 տոկոսով, իսկ արժեքը՝ 4,5 անգամ: Մեքենաշինության մեջ
ԻԴ—62 մոդելի հաստոցը, փոխարինվելով ԻԱ—62 հաստոցով, աշխատանքի ար-
տադրողականությունն ավելացրել է 21 տոկոսով, իսկ գինը՝ 29 տոկոսով: Այս հան-
գամանքը հրամայաբար պահանջում է կոնկրետ միջոցառումներ մշակել նոր մեքենա-
ների ու սարքավորումների արժեքների հարաբերական իջեցման նպատակով: Իսկ
դրա ուղին նոր ստեղծվող մեքենաների ու սարքավորումների նյութատարության
նվազեցումն է, արտադրողականության բարձրացումը, իսկ առանձին դեպքերում՝ մե-
տաղն այլ նյութերով փոխարինելը:

Սուբյեկտիվ պատճառների մեջ կարելի է դասել հիմնական ֆոնդերի օգտա-
գործման ցածր մակարդակը, իրենց շահագործման ժամկետները լրացրած տեխնոլո-
գիական սարքավորումների մեծ տեսակարար կշիռը, հիմնական ֆոնդերի դուրս-
գրման ցածր գործակցի առկայությունը:

Հետազոտվող ժամանակաշրջանում հանրապետության արդյունաբերությունում
խիստ ցածր է մեքենասարքավորումների դուրսգրման մակարդակը: Բավական է
նշել, որ նոր գործարկված մեքենաների և սարքավորումների միայն 29 տոկոսն է
ուղղվել դուրս գրվածների փոխարինմանը, մնացած մասը՝ մեքենայական պարկի
ընդլայնմանը: Նշենք, որ առանձին ճյուղերում այդ ցուցանիշն ավելի ցածր է: Ասենք
նաև, որ նման տեմպերի պահպանման պայմաններում կպահանջվեն տասնյակ տա-
րիներ՝ սարքավորումների առկա համակազմի նորացման համար: Դա վկայում է, որ
արդյունաբերությունում և դրա առանձին ճյուղերում բարձր է ֆիզիկապես և բարո-
յապես մաշված մեքենաների և սարքավորումների տեսակարար կշիռը, որն, ինչ
խոսք, բացասական ազդեցություն է ունենում հիմնական ֆոնդերի օգտագործման
արդյունավետության վրա:

Արդյունաբերության այնպիսի ճյուղերում, ինչպիսիք են մեքենաշինությունը, մե-
տաղամշակումը, քիմիականը, սնունդը և այլն, տեխնոլոգիական սարքավորումների
զգալի մասը շահագործվում է 15 տարուց ավելի, այն դեպքում, երբ դրանց ծառա-
յության նորմատիվային ժամկետ սահմանված է 9—10 տարի: Այսպես, հանրապե-
տության տարածքում գտնվող մեքենաշինական ձեռնարկություններում 10 և ավելի
տարիք ունեցող սարքավորումների տեսակարար կշիռը կազմում է մոտավորապես
40—45, քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում՝ 50—54, սննդի ար-
դյունաբերությունում՝ 45—52 տոկոս:

Որպեսզի ճիշտ պատկերացում կազմվի այն մասին, թե ինչպիսի վնաս է
հասցնում ժողովրդական տնտեսությանը հին, ֆիզիկապես ու բարոյապես մաշված
սարքավորումների օգտագործումը, բավական է նշել, որ միայն մեկ այդպիսի սար-
քավորում շահագործելիս պետությունը տարեկան կորցնում է ավելի քան 2,5 հազար
ռուբլի:

Արդյունաբերությունում նման վիճակի ստեղծումը հետևանք է այն բանի, որ հիմ-
նական ֆոնդերի և, հատկապես, մեքենաների ու սարքավորումների դուրսգրման տեմ-
պերը չեն համապատասխանում ժամանակակից արտադրական պահանջներին: Այդ
կապակցությամբ ՍՄԿԿ XXVII համագումարը խնդիր է դրել. «Արագացնել արտա-

դրական ապարատի նորացումը, առաջին հերթին՝ նվազ արդյունավետ սարքավորումները պրոգրեսիվ, բարձրարտադրողական սարքավորումներով ավելի արագ փոխարինելու հաշվին: Անցկացնել հիմնական արտադրական ֆոնդերի համընդհանուր գույքագրում: Ավելի քան մեկ երրորդով նորացնել դրանց ակտիվ մասը: Տասնմեկերորդ հնգամյակի համեմատությամբ առնվազն 2 անգամ մեծացնել հնացած հիմնական արտադրական ֆոնդերի դուրսգրման ծավալները» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 387):

Արտադրական պոտենցիալի ինտենսիվացումը մեծ չափով կախված է նաև նյութական ռեսուրսների արդյունավետ օգտագործումից: Ժողովրդական տնտեսության խոշոր մասշտաբների պայմաններում զգալիորեն մեծացել է արտադրությունում այդ ռեսուրսների տնտեսման նշանակությունը: Հանրապետությունում, եթե 1985 թ. հասարակական ամբողջական արդյունքի նյութատարության մեկ տոկոսով իջեցումը ազգային եկամուտը ավելացրել է մոտ 62, ապա 2000 թվականին կավելացնի 106 մլն ռուբլով:

Առաջիկա տարիներին ժողովրդական տնտեսության պահանջը հումքի, վառելիքի, էներգիայի և մյուս նյութական ռեսուրսների նկատմամբ աճելու է: Այդ պահանջի բավարարումը միայն էքստենսիվ եղանակով՝ վառելիքաէներգետիկ ու նյութական-հումքային ռեսուրսների արդյունահանման և արտադրության ծավալի մեծացման ճանապարհով գործնականում դառնում է անհնար և տնտեսապես էլ ոչ արդյունավետ: Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե 15 տարի առաջ 1 ռուբլու հումքի արդյունահանման համար ծախսվել է 2 ռ. կապիտալ ներդրումներ, ապա այժմ 4 ռ., իսկ առաջիկայում այդ ծախսերն ավելի կաճեն՝ կապված հանույթի լեռնաերկրաբանական պայմանների դժվարացման, երկրի արևելքում և հյուսիսում նոր հանքավայրերի շահագործման հետ: Այդ մասին ասվեց ՍՄԿԿ XXVII համագումարում. «Տարբեր մակարդակների ղեկավարների զգալի մասի հոգեբանությունը ձևավորվել է ռեսուրսների առատության պայմաններում: Նման հարստությունը շատերին է երես տվել, հանգեցրել վատնողության: Բայց վիճակը վաղուց փոխվել է: Չկա աշխատուժի նախկին հոսքը, մենք սկսել ենք թանկ վճարել յուրաքանչյուր տոննա նավթի, հանքաքարի, ածխի հանույթի և փոխադրման համար: Այս փաստերի առաջ չի կարելի աչք փակել, դրանց հետ պետք է հաշվի նստել: Եվ տնտեսել ամեն ինչում ու ամենուրեք՝ արտադրությունում և կենցաղում, անտարբեր չանցնել անտնտեսվարության ու վատնողության կողքով» (ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը, էջ 59): Այդ պատճառով էլ ժողովրդական տնտեսության առջև խնդիր է դրվում ապահովել ամեն տեսակի ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, արտադրության վերջնական արդյունքների աճին հասնել առկա միջոցներով, նվազագույն ծախսերով:

Նյութական ռեսուրսների օգտագործման վիճակի ուսումնասիրության դերը հատկապես մեծ է արդյունաբերության այն ճյուղերում, որոնք բնութագրվում են նյութերի օգտագործման խոշոր չափերով և, հետևաբար, նյութատարության բարձր մակարդակով: Այդպիսի ճյուղերի շարքին է դասվում հանրապետության սննդի արդյունաբերությունը, որի արտադրանքի ինքնարժեքի ծավալի 91 տոկոսը կազմել են նյութական ծախսերը, վերջինս ամենաբարձր ցուցանիշն է հանրապետության արդյունաբերության մյուս ճյուղերի համեմատ: Հետևաբար, սննդի արդյունաբերության արդյունավետության և ինտենսիվացման մակարդակը հիմնականում կախված է նյութական ռեսուրսների օգտագործման վիճակից: Հատկանշական է նաև այն, որ սննդարդյունաբերությունում, ի տարբերություն մյուս ճյուղերի, հատկապես բարձր է հումքի և հիմնական նյութերի բաժինը (շուրջ 86 տոկոս): Իսկ դա նշանակում է, որ արտադրանքի նյութատարության կրճատման միջոցառումները ամենից առաջ պետք է ուղղված լինեն հումքի խնայողական օգտագործմանը:

Նյութական ռեսուրսների օգտագործման բարելավման ռեզերվների բացահայտման նպատակով կարևոր նշանակություն ունի ապրանքային արտադրանքի նյութատարության փոփոխության ուսումնասիրությունը: Այդ նպատակով վերլուծվել է հանրապետության ագրոարդյունաբերական համալիրի մեջ մտնող ամբողջ սննդարդյունաբերության և նրա առանձին, առավել նյութատար ճյուղերի (շաքարի, հրուշակեղենի, գինեգործության, ծխախոտի, ձեթ-օճառի) նյութական ռեսուրսների օգտագործման վիճակը: Նշված ենթաճյուղերի ապրանքային արտադրանքի նյութական ծախսերի բաժինը կազմում է սննդարդյունաբերության համապատասխան ցուցանիշի շուրջ 90 տոկոսը, հետևաբար, այդ ենթաճյուղերի արտադրանքի նյութական ծախ-



սերի փոփոխությունների պարզաբանումը ամբողջական պատկերացում է տալիս ճյուղի արտադրանքի նյութատարության վերաբերյալ:

ՀՍՍՀ պետագրոարդի վերամշակող արդյունաբերության մասշտաբով, արտադրության ծախսերի ամբողջ ծավալում նյութական ռեսուրսների տեսակարար կշիռն աճել է 0,34 կետով՝ 1975 թ. 91,41-ից 1985 թ. հասել է 91,76 տոկոսի: Սննդարդյունաբերության ճյուղում նյութական ծախսերի տեսակարար կշիռը հատկապես բարձր է ծխախոտի, ձեթ-օճառի և գինեգործության ենթաճյուղերում: Այստեղ ապրանքային արտադրանքի նյութատարության փոփոխության հաշվարկը ցույց է տալիս, որ 1975 թ. համեմատ 1980 թ. 1000 ռ. ապրանքային արտադրանքի նյութատարությունը նվազել է 4,8 ռ., իսկ 1985 թ.՝ 19,3 ռ.: Այդ փոփոխությունը առանձին ենթաճյուղերում տարբեր է եղել: Այսպես, շաքարի արտադրությունում 1000 ռ. ապրանքային արտադրանքի նյութատարությունը 1975—1985 թթ. նվազել է 8,3 ռուբլով: Առավելագույն չափով այդ ցուցանիշը նշված ժամանակաշրջանում նվազել է ձեթ-օճառի արտադրությունում՝ 100,9, իսկ ծխախոտում աճել է 22,0 ռուբլով:

Նյութատարության փոփոխության պատճառները բացահայտելու նպատակով ուսումնասիրվել են հանրապետության սննդարդյունաբերության ապրանքային արտադրանքի նյութատարության վրա ազդող գործոնները: Վերջինիս գների փոփոխության հետևանքով արտադրանքի նյութատարությունը նվազել է 114 հազար ռուբլով, ընդ որում շաքարի արտադրությունում այդ ցուցանիշը ավելացել է 182 հազար ռուբլով:

Արտադրանքի նյութատարության փոփոխության վրա զգալի ազդեցություն է թողնում նաև նյութական ռեսուրսների գների փոփոխությունը: Այդ գործոնի հետևանքով նյութատարությունը սննդի արդյունաբերությունում ապրանքային արտադրանքի 1000 ռուբլու հաշվով ավելացել է 92,1 ռուբլով: Այդ թվում՝ գինեգործությունում ավելացել է 120,2, ձեթ-օճառի արտադրությունում՝ 19,6 ռուբլով, իսկ շաքարի հրուշակեղենի և ծխախոտի արտադրություններում այն համապատասխանաբար նվազել է 113,0, 68,7 և 71 ռուբլով:

Պայմանական-կայուն ծախսերի տնտեսման միջոցով նյութատարությունը 1985 թ. 1975 թ. համեմատությամբ 1000 ռ. ապրանքային արտադրանքի հաշվով նվազել է 0,2 ռուբլով: Ուսումնասիրվող բոլոր ենթաճյուղերում այդ ցուցանիշը նույնպես ունեցել է նվազման միտում:

Արտադրանքի նյութատարության վրա զգալի ազդեցություն են ունեցել նաև ներճյուղային կառուցվածքի փոփոխությունները: Այս գործոնի հաշվին վերջինս շաքարի, ծխախոտի և ձեթ-օճառի արտադրություններում ավելացել է համապատասխանաբար՝ 1,2, 0,27 և 0,1 ռուբլով, իսկ հրուշակեղենի և գինեգործության մեջ պակասել է 1,12 և 0,6 ռուբլով:

Արտադրության կառուցվածքի փոփոխությամբ վերջին տասնամյակում ապրանքային արտադրանքի նյութատարությունը ճյուղում հազար ռուբլու հաշվով ավելացել է 10,7 ռ.: Նշված գործոնի հաշվին հրուշակեղենի և ծխախոտի արտադրությունում այդ ցուցանիշն աճել է, մնացածում՝ նվազել:

Հաշվարկները ցույց են տալիս, որ այդ գործոնի միջոցով նյութատարությունը ճյուղում իջել է 0,03 ռուբլով: Ուսումնասիրվող ճյուղի 5 ենթաճյուղերից միայն մեկի՝ գինեգործության մեջ են օգտագործվել թափոններ:

Նյութատարության նվազման վրա զգալի ազդեցություն է թողնում արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացումը, որի կազմում առանձնանում են. նոր առաջավոր տեխնոլոգիայի ներդրումը և արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը, գործող տեխնիկայի և տեխնոլոգիայի կատարելագործումը:

Արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման հաշվին ճյուղում ուսումնասիրվող ժամանակաշրջանում արտադրանքի նյութատարությունը նվազել է 6,0 ռ. (հազար ռուբլու հաշվով), ընդ որում շաքարի, հրուշակեղենի, գինեգործության և ձեթ-օճառի արտադրություններում համապատասխանաբար 13,2, 8,0, 2,2, 6,0 ռ.:

Ունենալով արտադրանքի նյութատարության մակարդակի վրա առանձին գործոնների ազդեցության հաշվարկը՝ կարելի է կազմել այդ ազդեցությունների չափը ամփոփ ձևով ցույց տվող աղյուսակ, որից կերևա, թե ուսումնասիրվող ժամանակաշրջանում գործոնների ո՞ր խմբի ազդեցության տակ է աճել կամ նվազել արտադրանքի նյութատարությունը:

Սննդարդյունաբերության ճյուղերում նյութատարությունը փոփոխվում է որոշակի օրինաչափություններով, որը պետք է հաշվի առնել և օգտագործել նյութական ռե-

սուրսների պահանջարկի ընթացիկ և հեռանկարային պլանները կազմելու աշխատանքներում:

Երկրի զարգացման տեմպերի արագացման պայմաններում խնայողության կարևոր ու հիմնական ուղիներից է երկրորդային ռեսուրսների առավելագույն օգտագործումը, որը մեզ մոտ առանձնակի հրատապություն է ստանում: Դա պայմանավորված է հանրապետությունում ստեղծված սոցիալ-տնտեսական դրությամբ և բացատրվում է տարածքի ու ջրային ռեսուրսների սահմանափակությամբ, երկրաբնական պայմաններով, արդյունաբերության արագ զարգացմամբ և ժողովրդական տնտեսության ճյուղերի մեջ նրա բարձր տեսակարար կշռով, ներդրվող հումքից նրա հիմնական ճյուղերի կախվածությամբ, քաղաքակենտրոնացման բուռն աճով ու գոյապահպանության անբարենպաստ վիճակով:

Ներկայումս առաջանում են արտադրության և սպառման տասնյակ միլիոնավոր տոննաներով մնացուկներ: Միայն հանքային հումքի արդյունահանման և վերամշակման տեղերում ու քարհանքերի շրջակայքում կուտակվել է մոտ 260 **մլն** խորանարդ մետր մնացուկ:

Հանրապետությունն ունի ոչ հանքային հումքի արդյունահանման ու վերամշակման զարգացած արդյունաբերություն: Մշակման ժամանակ առաջանում են տարբեր տեսակի մնացուկներ: Սակայն պետք է նշել, որ օգտագործվում են առաջացած տուֆի մնացուկների միայն 6, բազալտի՝ 9 տոկոսը: Իսկ մարմարի, գրանիտի, տրավերտինի մնացուկները ընդհանրապես չեն օգտագործվում: Դրանցից բացի առաջանում են նաև այլ բազմաթիվ երկրորդային ռեսուրսներ, որոնցից են ապակու ջարդոնը, մակուլատուրան, մաշված դողերը, երկրորդային տեքստիլ նյութերը, կաշվե թափոնները և այլն:

Արտադրության և սպառման մնացուկների հավաքման ու վերամշակման աշխատանքները հիմնականում իրականացվում են «Հայերկրորդայինռեսուրսներ» արտադրական միավորման միջոցով: Վերջինս իր ենթակայության տակ ունի 9 մթերման արտադրական ձեռնարկություններ, որոնք գտնվում են Երևանում, Լենինականում, Կիրովականում, Սևանում, Ղափանում, Հոկտեմբերյանում և Մասիսում: Այդ միավորումը սպասարկում է հանրապետության տարածքում գտնվող բոլոր ձեռնարկություններին, կազմակերպություններին և հիմնարկներին: Բնակչությունից երկրորդային ռեսուրսների հավաքը կազմակերպելու համար գործում են 64 ընդունման կետեր: Ընդ որում զգալիորեն ավելացել են երկրորդային ռեսուրսների մթերման չափերը: Այսպես, եթե 1975 թ. «Հայերկրորդայինռեսուրսներ» արտադրական միավորումը մթերել է 33,3 հազար տոննա երկրորդային հումք, ապա 1980 թ.՝ 50,3, իսկ 1985 թ.՝ 56,3 հազար տոննա: Մթերված երկրորդային ռեսուրսների հիման վրա թողարկվում են ժողովրդական տնտեսության և բնակչության կարիքների բավարարման համար այնպիսի կարևոր արտադրատեսակներ, ինչպիսիք են լինոլեումի համար ջերմամեկուսիչ տակդիր, կահույքի արդյունաբերության համար կտավ, մաքրման լաթեր, կանանց կոշիկների համար ներբաններ, դեկորատիվ գորգեր, տեխնիկական անձեռոցիկներ, ներքնակներ, դեկորատիվ ծաղկամաններ: 1985 թ. թողարկվել է 1,6 **մլն** ռուբլու արժողությամբ արտադրանք, որը սպառողների շրջանում լայն պահանջարկ ունի: Բարձր է նաև արտադրական միավորման գործունեության շահավետությունը. օրինակ, 1985 թ. ստացվել է ավելի քան 600 հազար ռուբլու շահույթ:

Թեև հանրապետությունում գործում է երկրորդային ռեսուրսների մթերման և մշակման մասնագիտացված արտադրական միավորում, սակայն դեռևս նրա հնարավորությունները և զարգացման տեմպերը անբավարար են կուսակցության կողմից այդ ճյուղի առջև դրված խնդիրների հաջող լուծման համար: Հանրապետության արդյունաբերական արտադրանքի մեջ երկրորդային հումքից ստացված արտադրանքի բաժինը 1985 թ. կազմել է 0,57 տոկոս: Թերևս դա էր պատճառը, որ Հայաստանի կոմկուսի XXVIII համագումարում նշվեց, որ մեզ մոտ ռեսուրսների տնտեսումը դեռևս չի դարձել արտադրության ինտենսիվացման կարևորագույն գործոններից մեկը:

Այսօրվա դրությամբ խիստ անբավարար են օգտագործվում կենցաղային մնացորդները, այն դեպքում, երբ դրանցից կարելի է ստանալ տնտեսական մեծ օգուտ: Մասնագետների հաշվարկներով, 1000 տոննա կենցաղային մնացորդները միջին հաշվով պարունակում են՝ երկաթ և պողպատ 84 տոննա, ալյումին՝ 6,4, այլ մետաղներ՝ 3,2, ապակի՝ 97, թուղթ՝ 450 տոննա և օրգանական նյութերի այնպիսի քանակ, որոնցից ստացված էներգիան համարժեք է 113 տոննա նավթի այրումից առաջացած էներգիային:

Ժամանակակից պայմաններում անընդհատ աճում է կենցաղային մնացորդների քանակը: Երկրագնդի մեկ բնակչին տարեկան բաժին է ընկնում 300 կիլոգրամ այդպիսի մնացորդ, և քանի որ կենսամակարդակի բարձրացման հետ դրանք ավելանում են, ապա սպասվում է, որ մինչև դարեվերջ այդ քանակը կկրկնապատկվի:

Կենցաղային մնացորդների օգտագործման բարձիթողի վիճակը հասարակությանը մեծ վնաս է հասցնում: Դրանցից մեկն էլ շրջանառությունից զգալի հողային տարածությունների դուրս բերումն է: Այս հանգամանքը հատկապես կարևոր է սակավահող մեր հանրապետության համար: Ասվածից հետևում է, թե ինչպիսի կարևոր նշանակություն ունի կենցաղային մնացորդների օգտագործումը, մանավանդ որ այսօրվա դրությամբ դրանց հիմնական մասը դեռևս արդյունաբերական վերամշակման չի ենթարկվում: Հարկ է նկատել նաև այն հանգամանքը, որ հանրապետությունում նույնիսկ աղբավերամշակման գործարանի շահագործումից հետո էլ, ամենահամեստ հաշվարկներով, կենցաղային մնացորդների 90 տոկոսը չի մշակվելու, քանի որ կառուցվող աղբավերամշակման գործարանի տարեկան կարողությունը հազիվ 100 հազար տոննա է, իսկ հանրապետությունում տարեկան առաջանում է 1 **մլն** տոննա կենցաղային մնացորդ:

Շրջակա միջավայրի պահպանության և հումքի լրացուցիչ աղբյուրի ձեռքբերման շահերը պահանջում են հանրապետության խոշոր տնտեսական շրջաններում առայժմ ունենալ գոնե մեկական աղբավերամշակման գործարան:

Արտադրության և սպառման մնացուկների անբավարար չափերով օգտագործման հիմնական պատճառն այն է, որ կառավարման գործող մեթոդները, հատկապես տնտեսական խթանման բնագավառում, բավարար չափով չեն նպաստում տնտեսական շրջանառության մեջ մեծ չափերով մնացուկների ընդգրկմանը: Դրանց օգտագործումը մինչև վերջին ժամանակները չէր դիտվում որպես հասարակական արտադրության առանձնահատուկ՝ ռեսուրսաօգտագործման ոլորտի բաղկացուցիչ և հավասարարժեք մաս: Անբավարար էին նաև այս բնագավառի համար կատարվող գիտահետազոտական աշխատանքները:

Երկրորդային ռեսուրսների նկատմամբ ներկայումս ցուցաբերվում է բավականին մեծ ուշադրություն: Տասներկուերորդ հնգամյակում դրանց տեսակարար կշիռը էապես բարձրացվում է: Ընդհանուր ռեսուրսաօգտագործման մեջ այն կհասնի առնվազն 10—12 տոկոսի:

Առաջիկայում խոշոր աշխատանքներ են նախատեսվում նաև մեր հանրապետությունում: Ընթացիկ հնգամյակում ժողովրդական տնտեսության զարգացման կարևոր խնդիրների թվին են պատկանում նաև երկրորդային ռեսուրսների և արտադրության թափոնների օգտագործման բարելավումը: Ամբողջությամբ վերցրած, ապրանքային արտադրանքի արտադրությունը երկրորդային հումքի օգտագործմամբ 1990 թ. կաճի մեկ երրորդով՝ հասնելով 64,4 **մլն** ռուբլու: Կրկնակի կմեծանա տեղական հումքի և թափոնների վերամշակման ծավալը:

Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արդի փուլում, երբ տնտեսական աճի գործոնների մեջ առաջնակարգ նշանակություն են ստանում հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման գործոնները, ինչպես նյութական, այնպես էլ արտադրական մյուս ռեսուրսների արդյունավետ օգտագործումը հանդես է գալիս որպես արտադրության ինտենսիվացման կարևոր պայման:

ների գործարանները մինչև վերջերս թողարկել են 300 A և 500A տրանսֆորմատորներ: Ֆավ-ի միջոցով պարզվել է, որ եռակցման աշխատանքների զգալի մասը անց է կացվում 500 A-ից պակաս և 300 A-ից ավելի հոսանքներով: Ֆավ-ը հանձնարարել է կիրառել 400 A տրանսֆորմատոր: Դա թույլ է տալիս 100 ռուբլով կրճատել յուրաքանչյուր մեքենայի վրա նյութական և աշխատանքային ծախսերը, իսկ բոլոր տրանսֆորմատորների թողարկման հաշվով տնտեսել մի քանի միլիոն ռուբլու ռեսուրսներ:

Մեկ այլ օրինակ: Էլեկտրատեխարդմինի ձեռնարկությունները չեն արտադրում մինչև 1 A հոսանքի ռելե, այդ պատճառով կոմպլեկտային կայանքներում ստիպված օգտագործվում են 2A—4 A ռելեներ, որը առաջացնում է պրես-նյութերի, սև ու գունավոր մետաղների, արծաթի և մի շարք այլ նյութերի գերածախս: Ֆավ-ի հանձնարարականների ներդրումը նպաստում է գունավոր մետաղների, մեկուսիչ նյութերի և աշխատանքային ռեսուրսների խնայողական օգտագործմանը:

Առանց իրական պահանջներն ուսումնասիրելու՝ անհնար է կառուցել արդյունավետ էկոնոմիկա: Ելնելով շահագործման հենց իրական պայմաններից՝ պետք է հստակ պատկերացում ունենալ ոչ միայն պահանջների բնույթի, այլև դրանց մակարդակի մասին: Օրինակ, քանի որ էլեկտրատեխարդմինի ձեռնարկությունները 25 և 40 կվԱ հզորությամբ տրանսֆորմատորները պատրաստում են անբավարար քանակությամբ, սպառողները ստիպված են դրանց փոխարեն տեղակայել 63 և 100 կվԱ տրանսֆորմատորներ: Պարզ է, որ դա հանգեցնում է ռեսուրսների կորստի:

Մշտական համագործակցությունը սպառողների հետ, սարքավորումների կիրառման բոլոր ոլորտների մանրակրկիտ հետազոտությունները Ֆավ-ի առավել կարևոր պահանջներից են: Պատահական չէ, որ այդ մեթոդի կիրառման ընդլայնման ուղղությամբ էլեկտրատեխարդմինի աշխատանքների պլանում նախատեսվում է պատվիրատուների ներգրավումը էլեկտրատեխնիկական շինվածքների ստանդարտների և տեխնիկական պայմանների Ֆավ-ի անցկացման գործում՝ ոչ պիտանի ֆունկցիաների վերացման, առանձին տեխնիկական տվյալների ճշտման նպատակով: Կարևոր է տեխնիկական պահանջների նախագծային հիմնավորման ժամանակ ավելի լրիվ հաշվի առնել պատվիրատուների կարծիքը:

Հաճախ սպառողը իրազեկ չէ պատվիրվող արտադրության միջոցների հնարավորություններին (առավելություններին կամ թերություններին): Էլեկտրամեքենաշինության գիտահետազոտական ինստիտուտի կողմից մի շարք տարիների ընթացքում անցկացվող ոչ սինխրոն էլեկտրաշարժիչների կիրառման տեխնիկատնտեսական հիմնավորվածության ստուգումը ցույց է տալիս, որ առանձին պատվիրատուներ կամ նախագծողներ ճիշտ չեն ընտրում էլեկտրաշարժիչների տեսակները:

Շահագործման իրական պայմանների ուսումնասիրությունը մի շարք դեպքերում հանգեցնում է հատուկ շինվածքների մշակման անհրաժեշտության: Այսպես, 4 A միասնական սերիայի էլեկտրաշարժիչները նախատեսված են աշխատանքի երկարատև ռեժիմի համար: Միևնույն ժամանակ դրանց զգալի մասը օգտագործվում է կարճատև ռեժիմով աշխատող մեխանիզմների կոմպլեկտավորման համար: Հաշվարկները ցույց են տալիս, որ այս պայմանները կարող են բավարարել ավելի ցածր պարամետրերով, պարզեցված կոնստրուկցիաներով շարժիչները: Ընդ որում, դրանց պատրաստման ծախսերը հիմնական կոնստրուկցիոն նյութերի համեմատությամբ 30 տոկոսով պակաս են:

Արդյունաբերության 12 ճյուղերի էլեկտրամատակարարման, ինչպես նաև գյուղատնտեսության և կենցաղային սպասարկման ձեռնարկությունների արտադրական և տեխնոլոգիական սխեմաների հետազոտման արդյունքները ցույց են տվել, որ ավտոմատ անջատիչները սխալ են պատվիրվում: ՀԳՀ-ի մասնագետների գնահատմամբ, անջատիչների արտադրության կառուցվածքի իսկապես անհրաժեշտ պահանջին համապատասխանեցումը կտնտեսեր սև մետաղների գլանվածքի 42,8 տոկոսը, գունավոր մետաղների՝ 68, պլաստմասսաների՝ 61, արծաթի 49,8 տոկոսը:

Այսպիսով, ֆունկցիոնալ մոտեցումը կարող է, նախ, մեծ ազդեցություն գործել արտադրության արդյունավետ կառուցվածքի ձևավորման վրա և ապա՝ Ֆավ-ի մյուս սկզբունքների հետ զուգակցմամբ նպաստել նոր ավելի խնայողական շինվածքների ստեղծմանը:

Շինվածքների համակարգերի, ինչպես և դրանց բաղադրամասերի ֆունկցիաների և բնորոշ հատկությունների ճիշտ սահմանումը, դրանց պահանջների առավել ռացիոնալ մարմնավորման համար կոնստրուկտորական լուծումների զանազան տար-



բերակների մշակումը՝ առաջադրված տարբերակների համեմատումը ծախսերի մակարդակի հետ, որին պետք է ձգտի մշակողը, կազմում են Ֆավ-ի հիմնական բովանդակությունը: Դրանք թույլ են տալիս գտնել ժողովրդատնտեսական առավել խնայողական լուծումներ: Չնայած առաջին հայացքից այս լուծումները վերաբերում են շինվածքի կոնստրուկցիային, նրա կառուցվածքին, դրանք գործնականորեն ընդգրկում են աշխատանքի արդյունքը ձևավորող արտադրական բոլոր գործոնները՝ արտադրության միջոցները, աշխատուժը, էներգիան, տեխնոլոգիան:

Ֆավ-ի շնորհիվ այս բոլոր գործոնները դիտվում են համակարգված ձևով, որպես միասնական ամբողջություն: Այդ իմաստով այն կարելի է դիտել նաև որպես բոլոր նորամուծությունների կառավարման համակարգված մեթոդ, որպես արտադրության սոցիալիստական կոմպլեքսային ռացիոնալացման մեթոդ:

Նշելով ռեսուրսների օգտագործման գնահատման ժամանակ կորուստների տեղն ու բնույթը՝ նոր մեթոդը նախատեսում է այդ կորուստների վերացման իրական եղանակներ՝ ամենապարզից ամենաբարդը, որոնց ընդհանուր արդյունքը հանգեցվում է պահանջվող ֆունկցիաների առավել լավ ու արդյունավետ կատարմանը:

Ֆավ-ի մշակումների ներդրման շնորհիվ անցած հնգամյակի տարիներին միայն էլեկտրատեխնիկական արդյունաբերության արտադրանքի ինքնարժեքը իջել է ավելի քան 100 **մլն** ռուբլով, տնտեսվել են ավելի քան 42 հազար տոննա սև մետաղների գլանվածք, շուրջ 16 հազար տոննա գունավոր մետաղներ:

Ֆունկցիոնալ արժեքային վերլուծության համակարգը արտադրության ծախսերի կրճատման առավել հեռանկարային և արդյունավետ եղանակ է: Ուստի ճյուղի ձեռնարկություններում ու կազմակերպություններում պետք են ինքնուրույն ծառայություններ և ստորաբաժանումներ, որոնք կազմված լինեն Ֆավ-ի մեթոդներին տիրապետող բարձրորակ մասնագետներից: Մինչդեռ, գիտատեխնիկական առաջընթացի արագացման հիման վրա, էկոնոմիկայի ինտենսիվացման և դրա պոտենցիալի հետագա զարգացման սկզբունքորեն նոր խնդիրների լույսի ներքո, նոր մեթոդների իրացման տեմպերն ու որակը առայժմ չեն բավարարում առաջադրվող պահանջները: Ճիշտ է, ճյուղում որոշակի փորձ է կուտակվել նշված աշխատանքների կազմակերպման և անցկացման ուղղությամբ, կան դրա արդյունավետ կիրառման համոզիչ օրինակներ: Սակայն նույնիսկ այն առաջինն օգտագործող առանձին ենթաճյուղերի մասշտաբներում այդ մեթոդի ներդրումը դեռևս չի դարձել կառավարման համակարգի օրգանական մասը տնտեսական և կազմակերպական մի շարք պատճառների հետևանքով: Դրանցից մեկն է մակերեսային պատկերացումը մեթոդի էության, առավելությունների ու հնարավորությունների մասին:

Կառավարման բոլոր օղակներում և շինվածքների ստեղծման բոլոր փուլերում առանց աշխատողների անհրաժեշտ նախապատրաստման, առանց ղեկավարների կողմից մեթոդի ներդրմանն աջակցելու դժվար է հույս դնել Ֆավ-ի հաջող կիրառման վրա:

Առաջարկվող մեթոդին բնորոշ համակարգային մոտեցումը թույլ է տալիս այն դիտել որպես կազմակերպիչ միջոց արդյունավետության բարձրացման բոլոր հիմնական ուղղությունների իրացման գործում: Միավորումների, ձեռնարկությունների, գիտական կազմակերպությունների կողմից առաջարկվող մեթոդի օգտագործման աստիճանը կարող է ծառայել որպես արտադրության արդյունավետության բարձրացման գործում շահագրգռվածության յուրատեսակ չափանիշ:

Ֆավ-ը երբեմն անվանում են տեխնիկատնտեսական վերլուծության տարբերատեսակ կամ նոր ձև: Իրոք, վերլուծության և՛ այս, և՛ մյուս տեսակները հենվում են արտադրության առանձին միջոցների տեխնիկատնտեսական մակարդակը ներառնող հաշվարկների և ժողովրդական տնտեսության մեջ նոր շինվածքների օգտագործման տնտեսական արդյունավետության որոշման վրա: Այն հենվում է գիտական այնպիսի դիսցիպլինների նվաճումների վրա, ինչպիսիք են համակարգերի տեսությունը, աշխատանքի գիտական կազմակերպումը, գյուտարարական խնդիրների լուծման տեսությունը, գործառնությունների հետազոտումը, օպտիմալ ծրագրավորումը, կառավարման գործում ծրագրային-նպատակային մոտեցումը: Օգտագործելով գիտական տարբեր դիսցիպլինների առանձին մոտեցումներ ու տարրեր՝ Ֆավ-ը դրա հետ մեկտեղ ունի ինքնուրույն գիտական ու գործնական նշանակություն: Նպատակ ունենալով հետազոտվող օբյեկտի որակի ու ծախսերի հարաբերակցության բարելավումը, այն միասնական պրոցեսով քննարկում է դրանց ֆունկցիաներն ու

իրականացման ծախսերը, ֆունկցիաների կատարման երկընտրական տարբերակի մշակումը և առավել խնայողականների ընտրությունը:

Ֆավ-ի արտադրության արդյունավետության բարձրացման մյուս մեթոդներից տարբերող սկզբունքները վերաբերում են նրա պլանային բնույթին, պետական ժողովրդատնտեսական, ինչպես նաև կոմպլեքսային, համակարգային մոտեցմանը, ֆունկցիոնալ մոտեցմանը ստեղծագործական մտածողության ակտիվացման և կոլեկտիվ աշխատանքի սկզբունքներին:

Պլանային բնույթը նշանակում է նոր մեթոդի պարտադիր օգտագործում՝ որպես արդյունավետության կառավարման գործիք, նրա կիրառման առաջադրանքների սահմանում և դրանց կատարման վերահսկողություն, այդ առաջադրանքների արտացոլում գիտության ու տեխնիկայի զարգացման պլաններում և ձեռնարկության տեխարդֆինպլանի համապատասխան բաժիններում:

Պետական, ժողովրդատնտեսական մոտեցումն արտահայտվում է ընդհանուր պետական դիրքերից կարևոր խնդիրների առաջադրման և լուծման մեջ՝ ի տարբերություն մասնավոր այնպիսի խնդիրների առաջադրումից, որոնց լուծման մեջ շահագրգռված են միայն առանձին կոլեկտիվներ: Տվյալ մոտեցումը պրակտիկայում նշանակում է առաջնորդվել հետևյալ սկզբունքով. յուրաքանչյուր առանձին կատարողի կամ կոլեկտիվի գործունեությունն այն աստիճան է օգտակար, որքան այն օգտակար է ամբողջ հասարակության, պետության համար: Տեխնիկական կամ կազմակերպական լուծումը շահավետ է ճանաչվում, եթե դրա իրականացման շնորհիվ ծախսերի ավելացումը կենսաշարքի փուլերից մեկում կկրճատի համատեղ ծախսերի գումարը:

Կոմպլեքսային մոտեցումը նախատեսում է որակը և ծախսերը որոշող գործոնների՝ օբյեկտների բոլոր տեսակների կոնստրուկցիայի, տեխնոլոգիայի, արտադրության կազմակերպման, բոլոր ռեսուրսների, շինվածքի կենսաշարքի փուլերի՝ նախագծային, արտադրության նախապատրաստման ու յուրացման, սպառողին հասցման և շահագործման հետազոտումը:

Համակարգային մոտեցումը պահանջում է օբյեկտի հետազոտումը, մի կողմից որպես միասնական ամբողջություն կամ համակարգ ,որը ներառնում է փոխգործողության մեջ գտնվող ուրիշ բաղադրատարրեր, մյուս կողմից՝ որպես ավելի բարձր մակարդակի ուրիշ համակարգի մի մասը ,որում վերլուծվող օբյեկտը մյուս ենթահամակարգերի հետ որոշակի փոխհարաբերությունների մեջ է գտնվում:

Լուծումների նոր, առավել առաջադիմական տարբերակների որոնման համար կարևորվում է այսպես կոչված ստեղծագործության ակտիվացման սկզբունքը: Ֆսվ-ին չի բավարարում ստեղծագործական մտածողության ակտիվացման՝ մեզ հայտնի մեթոդներից որևէ մեկը: Ելնելով լուծվող խնդիրների բազմազանությունից, այն հնարավորություն է ընձեռում կիրառել մտածողության միջոցների տարբեր համադրություններ:

Կոլեկտիվ աշխատանքի սկզբունքը պայմանավորված է նրանով, որ Ֆավ-ը պահանջում է գիտական շատ դիսցիպլինների, այդ թվում՝ տեխնիկայի, կառավարման, հոգեբանության իմացություն: Դրա համար էլ այն անց է կացվում տարբեր պրոֆեսիաների մասնագետների կողմից, որը թույլ է տալիս կատարել բազմակողմանի հետազոտություն:

Ֆունկցիոնալ մոտեցումը նշված մյուս սկզբունքների ամբողջ կարևորության պայմաններում Ֆավ-ի մեթոդի մեջ հանդիսանում է որոշողը: Գործնականորեն ամբողջ հետազոտումը տարվում է ֆունկցիայի նկատմամբ՝ ամենատարբեր դիրքերից դիտելով:

Եթե առարկայական մոտեցման դեպքում շինվածքի ինքնարժեքի իջեցման պրոբլեմով զբաղվող մասնագետը խնդիրը ձևակերպում է մոտավորապես այսպես՝ ինչպե՞ս իջեցնել տվյալ շինվածքի ծախսերը, ապա ֆունկցիոնալ մոտեցման դեպքում պետք է պարզել՝ անհրաժե՞շտ են արդյոք այդ ֆունկցիաները: Եթե՝ այո, ապա անհրաժե՞շտ են արդյոք նախատեսված քանակական բնութագրերը, ինչպիսի՞ առավել խնայողական միջոցով կարելի է հասնել ֆունկցիաների կատարմանը: Առաջին դեպքում ուշադրությունը կենտրոնացվում է արդեն ընդունված կոնստրուկտորական լուծումների շրջանակներում շինվածքների պատրաստման լավագույն եղանակների որոնման վրա: Այսպիսի մոտեցումը երկար տարիներ դրական արդյունքներ է տվել, նպաստել մեքենաշինական, այդ թվում և էլեկտրատեխնիկական արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը: Սակայն, մեքենաների կոնստրուկցիաների բարդացման,



համակարգային նշանակության մեծացման, նախագծման որակի բարձրացման հետ մեկտեղ, այսպիսի մոտեցման դեպքում էլ ավելի քիչ է հաջողվում հասնել ինքնարժեքի էական իջեցման:

Ֆունկցիոնալ մոտեցման դեպքում մասնագետը լրիվ վերացարկվում է վերլուծվող համակարգի իրական կոնստրուկցիայից և ուշադրությունը կենտրոնացնում դրա ֆունկցիաների վրա: Այդ դեպքում փոխվում է նաև արտադրանքի ինքնարժեքի իջեցման ուղիների որոնման ուղղությունը: Կարևոր նշանակություն ունեն վերլուծվող օբյեկտի ֆունկցիայի հստակ որոշումը, դրա քանակական բնութագրերը: Ավանդականից սկզբունքորեն տարբերվող այս հարցադրումը փոխում է մտածողության առաջացած տարածատեսակը և թույլ է տալիս հասնել այնպիսի տնտեսական արդյունքի, որը ձեռք չի բերվում ինքնարժեքի իջեցման մյուս մեթոդների օգնությամբ:

Ֆունկցիոնալ մոտեցման կարևորությունը և նպատակահարմարությունը պայմանավորվում է նրանով, որ սպառողին, վերջին հաշվով, հետաքրքրում են ոչ թե առարկաներն ու իրերը, այլ այն գործողությունները, որոնք կարելի է կատարել դրանց միջոցով, այսինքն՝ ֆունկցիաները:

Կարելի է նշել ինքնարժեքի իջեցման նպատակով ֆունկցիոնալ մոտեցման կիրառման երեք գործոն: Դա, առաջին հերթին, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի աճն է, որն ավելացնում է այս կամ այն ֆունկցիայի կատարման երկընտրական նոր եղանակների թիվը, երկրորդ՝ աշխատանքային, նյութական ու ֆինանսական ռեսուրսների սահմանափակությունը, որ յուրաքանչյուր որոշակի ժամանակաշրջանում առկա է հասարակության մեջ, երրորդ՝ տնտեսագիտական-մաթեմատիկական մեթոդների, ԷՀՄ-ի, համակարգային մեթոդաբանության օգտագործման հնարավորությունը առավել խնայողական լուծումների ընտրության համար:

Արտադրության տեխնիկական մակարդակի հետագա բարձրացման նպատակով անհրաժեշտ է, որպեսզի միավորումներն ու ձեռնարկությունները նոր շինվածքների ու տեխնոլոգիայի մշակման ժամանակ պատշաճ ուշադրություն դարձնեն ֆունկցիոնալ արժեքային վերլուծության ուսումնասիրման և գործնական կիրառման հարցերին, լայնորեն օգտագործեն Ֆավ-ի հնարավորությունները՝ մասնագետների աշխատանքի ռացիոնալացման համար:

# ՆՊԱՍՏԵԼՈՎ ՄԱՐԴԿԱՅԻՆ ԳՈՐԾՈՆԻ ԱԿՏԻՎԱՑՄԱՆԸ

Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ ժողովրդի կողմից իրականացվող հասարակության տնտեսական և սոցիալական կյանքի բոլոր կողմերի վերակառուցման պրոցեսի ինչպես նպատակը, այնպես էլ գլխավոր գործող անձը մարդն է: Կուսակցության առաջադրած վերակառուցման կուրսով պահանջվում է առավել լրիվ օգտագործել սոցիալիզմի բոլոր հնարավորությունները մարդու, մարդկային գործոնի ակտիվացման համար: Վերակառուցման բարդ, բազմաբնույթ, շատ դեպքերում նաև հակասական աշխատանքի արդյունավետությունն ուղղակի կապի մեջ է գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործունեության արմատական բարելավման հետ:

ՀԿԿ Արթիկի շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները հատկապես ՍՄԿԿ XXVII համագումարից հետո առավել հաստատակամորեն են ձգտում գաղափարախոսական աշխատանքը վերակառուցել նոր հարցադրումների ոգով, այն սերտորեն շաղկապել շրջանի էկոնոմիկայի, սոցիալական և հոգևոր ոլորտներում սկսված պրոցեսների հետ, այդ գործին հաղորդել կոնկրետություն և, ամենագլխավորը, ներգործության ուժ: Շրջանում ավելի ու ավելի է ամրապնդվում վերակառուցման անհրաժեշտության համոզմունքը: Աշխատավորները եռանդագին են արտահայտվում հասունացած պրոբլեմների լուծման, ամբողջ հնացածի հաղթահարման օգտին:

Վերափոխումների անխուսափելիության մասսայական գիտակցումը շրջանում կուսակցական-կազմակերպական, քաղաքական-դաստիարակչական այն աշխատանքի արդյունքն է, որի նպատակն է դաստիարակել մարդկանց, հասնել հասարակության բարոյական նոր վիճակի, ապահովել յուրաքանչյուրի ծանրակշիռ ավանդը ընդհանուր գործի մեջ: Դրանում իր կարևոր դերն է կատարում աշխատավորների քաղաքական և տնտեսագիտական ուսուցումը՝ որպես սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու, հասարակական կյանքի տարբեր ոլորտները վերակառուցելու, մարդկային գործոնն ակտիվացնելու կարևոր լծակ:

Ելակետ ունենալով աշխատավորների քաղաքական և տնտեսագիտական ուսուցման համակարգին ներկայացվող նոր պահանջները, կուսշրջկոմը, սկզբնական կազմակերպությունները որոշակի աշխատանք են տանում քաղդպրոցների կոմպլեկտավորումը և ուսուցման ձևերը կատարելագործելու նպատակով: Բազմաթիվ կուսկազմակերպություններում և աշխատավորական կոլեկտիվներում դրանք կոմպլեկտավորվել են «Աշխատում ենք միասին, սովորում ենք միասին» պահանջին համապատասխան: Այդ դպրոցներում ընդգրկվել են միևնույն տեղում աշխատող կոմունիստներ, կոմերիտականներ, անկուսակցականներ: Կուսակցական և քաղաքական մասսայական ուսուցման համակարգերում այդ սկզբունքով ձևավորել ենք 92, իսկ տնտեսագիտական կրթության համակարգում՝ 201 դպրոց: Արդյունաբերական և շինարարական մեկական կազմակերպությունում գիտափորձի կարգով համատեղվել է տնտեսագիտական և մասնագիտական ուսուցումը:

Դպրոցները կոմպլեկտավորելիս կուսկազմակերպություններին հնարավորություն ենք ընձեռել ազատորեն կատարելու անհրաժեշտ փոփոխություններ, եթե դրանք,

ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱՐՏՈՒՇ ՎԱԽԹԱՆԳԻ— ՀԿԿ Արթիկի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ:



իհարկե, կնպաստեն այդ դպրոցները կազմակերպորեն ամրապնդելուն, ունկնդիրների հետաքրքրությունների ընդլայնմանը, առհասարակ, պարապմունքների որակի բարձրացմանը:

Հանրահայտ իրողություն է. պրոպագանդիստը քաղուսուցման կենտրոնական դեմքն է, իսկ վերակառուցման մեր ժամանակներում նրա դերը, բնականաբար, ավելի է բարձրանում: Ահա թե ինչու մենք առանձնահատուկ ուշադրություն ենք նվիրում պրոպագանդիստական կադրերի ընտրությանն ու առաջադրմանը: Այս հարցում շատ սկզբնական կուսկազմակերպություններ արդեն նախկին «համախառն» չափանիշներով չեն մոտենում, ամենից առաջ ձգտում են ճշտորեն գնահատել նրանց տեսական ու մասնագիտական պատրաստվածությունը, քաղաքական կուլտուրան, բարոյական հատկանիշները, մարդկանց հետ լրջորեն աշխատելու ցանկությունը: Գործին մեծապես օգնում է հունվար ամսից շրջկոմում պարբերաբար անցկացվող պրոպագանդիստների հասարակական-քաղաքական ատեստացիան, որը հնարավորություն է ընձեռում խորամուխ լինելու նրանց գիտելիքների ու մեթոդական զինվածության մեջ, հրաժարվելու այն ընկերների ծառայություններից, ովքեր չեն բավարարում արդի փուլում պրոպագանդիստին ներկայացվող պահանջները, քիչ են զբաղվում իրենց գաղափարաքաղաքական մակարդակի բարձրացման հարցերով, կուսակցական այդ կարևորագույն հանձնարարությունը կատարում էին ի միջի այլոց:

Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման կազմակերպման գործում մեծ անելիքներ ունեն քաղլուսկաբինետները: Իր գործունեությունը զգալիորեն բարելավել ու աշխուժացրել է կուսշրջկոմի քաղլուսկաբինետը: Ի հաշիվ գաղափարական, պրոպագանդիստական լավագույն կադրերի, վերանայվել են մեթոդական խորհուրդների, արտահաստիքային առարկայական կոնսուլտանտների կազմերը: Քաղլուսկաբինետում ստեղծվել են «Վերակառուցումը և գաղափարախոսական աշխատանքը», «Պրոպագանդիստ, քո տեղը վերակառուցման պրոցեսում» մեթոդական նոր անկյուններ, տնտեսագիտական վերլուծության բյուրո և այլն:

Զգալի փոփոխություններ են կատարվել պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքում: Առավել հետաքրքրական ու նպատակասլաց են դարձել կուսակցական և տնտեսագիտական կրթության համակարգերի պրոպագանդիստների մշտական գործող սեմինարի պարապմունքները: Տեսական զեկուցումների թեմաներ ընտրելիս նախապատվությունը տրվում է ուսումնական պլանների հանգուցային հարցերի պարզաբանմանը, հաշվի առնվում ունկնդիրների ցանկությունը: Սեմինար պարապմունքներում մասսայականացվում է առաջավոր պրոպագանդիստների փորձը: Այս առնչությամբ լավ են օգտագործվում տեղական «Լեռնագործ» թերթի և ռադիոհաղորդումների հնարավորությունները: Մեծ ուշադրության են արժանացել Հ. Ադամյանի («Արթիկտուֆ» ԱՄ), Վ. Նահապետյանի (տեքստիլ ֆաբրիկա), Ժ. Սեխլեյանի (Փանիկի կոլտնտեսություն), Ս. Մկրտչյանի (№ 6 դպրոց), Գ. Խաչատրյանի (Անուշավանի կոլտնտեսություն) և ուրիշների փորձը:

Անուշավանի կոլտնտեսության պրոպագանդիստ Գ. Խաչատրյանին 16 տարի է, ինչ վստահված է այդ դժվարին ու պատվավոր պարտականությունը: Այժմ նա ղեկավարում է կոլտնտեսության կուսկազմակերպությանն առընթեր «Երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացումը» թեման ուսումնասիրող քաղդպրոցը, որտեղ ընդգրկված են 27 ունկնդիրներ՝ կթվորուհիներ, անասնապահներ: Պրոպագանդիստը մեծ ջանասիրությամբ է նախապատրաստվում պարապմունքներին, աշխատում անձնական ստեղծագործական պլանով, մշտապես հարստացնում իր գիտելիքները: Նրան հատուկ է գաղափարախոսական աշխատանքի բովանդակության և արդյունքների համար բարձր պատասխանատվության զգացումը, մարդկանց հետ նոր աշխատաձևերի և մեթոդների որոնումը:

Ուսումնասիրվող յուրաքանչյուր թեմա նա կապում է տեղամասի առջև ծառացած խնդիրների հետ, գործարար ու մտերմիկ զրույց վարում ունկնդիրներին հետաքրքրող ամենատարբեր հարցերի շուրջ: Պրոպագանդիստը հասել է նրան, որ ունկընդիրների մեծ մասը կարողանում է ինքնուրույն վերլուծել թերությունների, բացթողումների պատճառները, նպատակամղվել դրանց վերացմանը: Նրա ունկնդիրները լավ գիտեն, որ իրենց պրոպագանդիստը պահանջկոտ է, հետևողական, անհաշտ այնպիսի երևույթների նկատմամբ, ինչպիսիք են անպատասխանատվությունը, անտարբերությունը, պասիվությունը: Եվ բոլորը ձգտում են ընդօրինակել նրան: Գ. Խաչատրյանի արդյունավետ աշխատանքը քիչ բանով չի նպաստում այն բանին, որ դպրոցի ունկնդիրները անկեղծ մտահոգություն ու սրտացավություն դրսևորեն անաս-

նապահական մթերքների արտադրության ավելացման, անասնապահության վարման կուլտուրայի բարձրացման նկատմամբ:

Պրոպագանդիստը սովորաբար խուսափում է հանրահայտ ճշմարտությունների մեխանիկական կրկնությունից, ձևամոլությունից: Նա ձգտում է, որպեսզի ունկնդիրները նոր պայմաններում կարողանան սթափ կշռադատել իրենց գործունեությունը, ձևավորեն իրենց մեջ նախաձեռնողականություն, ձեռներեցություն, համոզմունք, որ բարեխիղճ աշխատանքի դեպքում միշտ էլ կարելի է հասնել լավագույն արդյունքի: Իսկ անելիքներ դեռ շատ կան: Ոչ բոլոր ունկնդիրներն են դրսևորում աշխատանքային, հասարակական բարձր որակներ, պատրաստակամություն՝ առաջնահերթ խնդիրների լուծման նկատմամբ: Դրանց վրա է ուղղված պրոպագանդիստ Գ. Խաչատրյանի ուշադրությունը:

Շրջանում հմուտ պրոպագանդիստի ճանաչում ունեն նաև Ն. Հակոբյանը (վակուումային էլեկտրական վառարանների գործարան), Ս. Սարգսյանը (Հառիճի սովխոզ), Ա. Գալստյանը (Սարատակի դպրոց) և ուրիշներ:

Պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքում կարևոր տեղ է հատկացվում մեթոդական զեկուցումների կազմակերպմանը: Դրանցում առանձնապես խոսվում է այն մասին, թե պրոպագանդիստներն ինչպես են մատուցում նյութը, բարձրացնում ունկնդիրների հասարակական-քաղաքական ակտիվությունը, ինչպես են նրանց մոտ համոզմունք ձևավորում և մղում վերակառուցման խնդիրների լուծման գործում ինքնուրույն, նպատակասլաց աշխատանքի և այլն: Այս նպատակին են ծառայում նաև յուրաքանչյուր ամիս շրջկոմում մեկ-երկու անգամ կազմակերպվող անհատական ու խմբակային կոնսուլտացիաները, որոնց մասնակից են դարձվում պատմության և հասարակագիտության լավագույն ուսուցիչներ, ժողովրդական տնտեսության առաջատար մասնագետներ: Կոնսուլտացիաների անցկացման մասին նախօրոք ծանուցվում է տեղական թերթում: Քաղլուսկաբինետը, գաղափարական հանձնաժողովը պատրաստում և տեղերն են ուղարկում մեթոդական հանձնարարականներ, բյուլետեններ և այլն:

Փորձի փոխանակման նպատակով հաճախ է օգտագործվում փոխադարձ ունկընդրումների ձևը: Այսպես, քաղուստարվա ընթացքում «Ապակեմեքենա» գործարանի պրոպագանդիստները երկու անգամ ունկնդրել են «Արթիկտուֆ» արտադրամիավորման և տեքստիլ ֆաբրիկայի քաղաքական ու տնտեսագիտական կրթության դպրոցների պարապմունքները: Փոխադարձ ունկնդրումներ են կազմակերպվել նաև հարևան գյուղերի պրոպագանդիստների միջև (Մ. Մանթաշ-Արևշատ, Փանիկ-Մեղրաշեն):

Պրոպագանդիստներին ցույց տրվող օգնությանը նպաստում է նաև բաց պարապմունքների անցկացումը: Նախորդ և ընթացիկ ուստարում այդպիսիք կազմակերպվել են «Ապակեմեքենա» գործարանում, Փանիկի կոլտնտեսությունում, Արթիկի №№ 2, 5 դպրոցներում: Դրանց արդյունքները քննարկվել են մեթոդական խորհուրդների նիստերում և հրապարակվել «Լեռնագործ» թերթում:

ՀԿԿ շրջկոմը վերակառուցման և տնտեսավարման նոր պայմաններում առանձնահատուկ նշանակություն է տալիս տնտեսագիտական պարտուսի իրականացմանը: Շրջանի նյութական արտադրության ոլորտի բոլոր ձեռնարկություններում ստեղծվում են արտադրատնտեսագիտական ուսուցման մեթոդական խորհուրդներ, որոնց աշխատանքը անմիջականորեն գլխավորում են նրանց ղեկավարները կամ այդ գործին առնչվող պատասխանատու կադրեր: Միջոցներ են ձեռնարկվում տնտեսագիտական պարտուսը վճռականորեն կողմնորոշելու ձեռնարկություններում և կազմակերպություններում տնտհաշվարկի, կոլեկտիվ կապալի, աշխատանքի կազմակերպմանը և վարձատրության առաջադիմական ձևերի ուսումնասիրությանը, պայմանագրերի, պլանների և պարտավորությունների կատարման ընթացքի վերլուծությանը, աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի որակի բարձրացման, ռեսուրսախնայողության ուղիների որոնմանը:

Տնտեսագիտական կրթության համակարգի պրոպագանդիստներին տեսական և մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով անցկացվում են շերտավորված սեմինար-խորհրդակցություններ, բանավեճեր, դրանց մասնակից են դարձվում շրջանի լավագույն տնտեսագետները, արդյունաբերական ձեռնարկությունների, ԾԱԱՄ-ի պատասխանատու աշխատողներ, հանրապետության գիտական հիմնարկներից հրավիրված որակյալ մասնագետներ:



Կուսշրջկոմը և սկզբնական կազմակերպություններն էապես ուժեղացրել են քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության դպրոցների պարապմունքների արդյունավետ անցկացման նկատմամբ կուսակցական վերահսկողությունը և պահանջկոտությունը: Բազմաթիվ սկզբնական կուսկազմակերպություններ պրակտիկա են դարձրել պրոպագանդիստների, մեթոդական խորհուրդների նախագահների, հասարակական հիմունքներով գործող քաղաքական և տնտեսագիտական կրթության կաբինետների վարիչների, նաև կոմունիստ ունկնդիրների հաշվետվությունների և հաղորդումների քննարկումները կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում: Դա, անշուշտ, բարձրացնում է նրանց պատասխանատվությունը ուսուցման նկատմամբ, օգնում վերացնելու այդ աշխատանքում եղած ձևականության դեռևս պահպանվող տարրերը:

«Ապակեմեքենա» գործարանը մեկ տարուց ավելի է, ինչ անցել է թողարկվող արտադրանքի պետընդունման, իսկ ընթացիկ տարվա հունվարի 1-ից աշխատում է լրիվ տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման և ինքնածախսածածկման եղանակով: Բնականաբար, նման պայմաններում անհամեմատ ավելի է մեծանում կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության դերը կոլեկտիվի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների լուծման գործում: Ձեռնարկության սկզբնական կուսկազմակերպությունը մշտական ուշադրության կենտրոնում է պահում ուսուցման արդյունավետության, նրա ներգործության բարձրացման հարցերը: Դպրոցների կոմպլեկտավորումն այստեղ կատարվել է ըստ արտադրական սկզբունքի: Կուսբյուրոն դիրեկցիայի և արհկոմի հետ մեկտեղ կոնկրետ քայլեր է արել պրոպագանդիստական կադրերի ճիշտ ընտրության, նրանց հետ տարվող աշխատանքի բարելավման նպատակով: Բոլոր 11 պրոպագանդիստներն էլ ձեռնարկության ղեկավար և ինժեներատեխնիկական աշխատողներ են: Հասարակական հիմունքներով գործում է քաղաքական և տնտեսագիտական կրթության կաբինետ, որը կահավորված է ցուցադրանյութերով և տեխնիկական միջոցներով: Դիրեկցիային առընթեր գործում է արտադրատնտեսագիտական ուսուցման մեթոդական խորհուրդ:

Կուսբյուրոն քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության ղեկավարումը համարում է իր առաջնահերթ խնդիրներից մեկը, կուսակցական ժողովներում, բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկվում են պարապմունքների անցկացմանը վերաբերող հարցեր, պրոպագանդիստների, առանձին ունկնդիրների հաշվետվություններ, լսվում հաղորդումներ: Նմանատիպ հարցեր են արծարծվում նաև մեթոդական խորհրդում: Կուսբյուրոն կիրառում է պրոպագանդիստներին արդյունավետ օգնություն ցույց տալու այլ ձևեր ու եղանակներ. կատարվում են փոխադարձ ունկընդրումներ, ուսումնասիրվում և մասսայականացվում է պրոպագանդիստական աշխատանքի առաջավոր փորձը, բարձրացվում է դիրեկցիայի և արհկոմի դերն ու պատասխանատվությունը տնտեսագիտական պարտուսի կենսագործման համար, համապատասխան ընթացք տրվում ունկնդիրների բարձրացրած տարբեր հարցերին և այլն:

Ձեռնարկված միջոցների շնորհիվ նկատելիորեն բարելավվել է ուսուցման և կրթության գործի կազմակերպումը: Անհամեմատ բարձրացել է պրոպագանդիստական ակտիվի պատասխանատվությունը ուսուցման պրակտիկ արդյունքների նկատմամբ, ուժեղացել է փոխադարձ պահանջկոտությունը, ամրապնդվում է աշխատանքային և կատարողական կարգապահությունը: Ընթացքի մեջ է տեխնիկական վերազինման գործը: Ձեռնարկությունն սկսել է կատարել պետական առաջադրանքները և մրցությամբ ստանձնած սոցիալիստական պարտավորությունները:

Ինչ խոսք, քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության ներգործունությունն ուժեղացնելու առնչությամբ դեռևս կան չլուծված շատ խնդիրներ, որոնց վրա է սևեռված սկզբնական կուսկազմակերպության, նրա բյուրոյի ուշադրությունը:

ՀԿԿ շրջկոմի բյուրոյում, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի նիստերում, գաղափարական հանձնաժողովում նույնպես պլանավորվում և քննարկվում են նոր պայմաններում ուսուցման կազմակերպման վերաբերյալ տարբեր հարցեր, անցկացվում են ըստ ոլորտների ու բնագավառների մասսայական ունկնդրումներ: Այսպես, ընթացիկ տարվա փետրվարին շրջկոմի բյուրոն քննարկեց Փանիկի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության հաշվետվությունը՝ կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության վերակառուցման աշխատանքի մասին: Բյուրոն արձանագրեց, որ, չնայած կատարված դրական որոշ աշխատանքին, ուսուցման վերակառուցման նպատակով տարվող աշխատանքը ոչ ամբողջովին է համապատասխանում

ՍՄԿԿ XXVII համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի «Աշխատավորների քաղաքական և տնտեսագիտական ուսուցման համակարգի վերակառուցման մասին» որոշման պահանջներին: Դեռևս արդյունավետ ու նպատակասլաց աշխատանք չի տարվում կոմունիստների, անկուսակցականների կոլտնտեսականների մարքս-լենինյան պատրաստության, գաղափարաքաղաքական կոփվածության, նրանց մեջ քաղաքական բարձր կուլտուրայի, ժամանակակից տնտեսագիտական մտածողության, տնտեսական և հասարակական կյանքի բոլոր կողմերի նորացման՝ կուսակցության կուրսի էության խոր ըմբռնման ձևավորման համար: Լուրջ անելիքներ կան տնտեսագիտական պարտուսի կազմակերպման գործում: Այն լիովին չի կողմնորոշված տնտհաշվարկի, կոլեկտիվ կապալի, աշխատանքի կազմակերպման և վարձատրության առաջադիմական ձևերի ուսումնասիրության, պլանների և պարտավորությունների կատարման ընթացքի վերլուծության խնդիրներին:

Անշուշտ, Արթիկի շրջանում առկա են աշխատավորների քաղաքական և տնտեսագիտական ուսուցման վերակառուցման դրական միտումներ: Ամբողջությամբ վերցրած ուսուցման կազմակերպման նախնական արդյունքները հուսադրող են: Այս կարևոր գործին ավելի կոնկրետ ուշադրություն և հոգատարություն է նվիրվում: Չափազանց կարևոր է, որ շրջանի կոմունիստները և աշխատավորները ջերմորեն պաշտպանում են վերակառուցման կուրսը և ակտիվորեն մասնակցում նրա իրականացմանը: Իսկ դա արդյունք է նաև գաղափարախոսական աշխատանքի ներգործունության որոշակի ուժեղացման:

Շրջանի կոմունիստները, աշխատավորները այսօր ավելի քան քննադատաբար են գնահատում անցած ժամանակահատվածի ձեռքբերումներն ու բացթողումները, որոնում տնտեսական, կազմակերպական և գաղափարախոսական աշխատանքի նոր եղանակներ ու մոտեցումներ, դրսևորում գործերի վիճակի հետագա բարելավման ձգտում: Կադրերի, այդ թվում գաղափարախոսական կադրերի աշխատանքի գնահատման հարցում վճռական է դառնում նրանց վերաբերմունքը թերությունների, անտարբերության և պասսիվության նկատմամբ, նվիրվածությունը՝ վերակառուցման հրատապ պահանջներին: Դա լիովին վերաբերում է նաև ուսուցման գործի հետագա բարելավմանը: Մինչդեռ այս ասպարեզում դեռևս քիչ չեն նաև էական թերությունները: Գաղափարախոսական աշխատանքը տակավին ձերբազատված չէ ձևականությունից: Այսօր էլ նորի կողքին գոյակցում են մակերեսայնության, հնացած չափանիշներով աշխատելու ոչ քիչ փաստեր: Ամենևին էլ շրջանի ոչ բոլոր սկզբնական կուսկազմակերպություններն են պատշաճ տեմպ ու որակ հաղորդում վերակառուցման պրոցեսին, այդ թվում գաղափարախոսական աշխատանքին: Առանձին կազմակերպություններում ու կոլեկտիվներում ուսուցումը դեռևս կտրված է իրական կյանքից: Ուսուցման վերակառուցման համար տարվող աշխատանքը առայժմ կոնկրետ և գործնական արդյունքներ չի տալիս Պեմզաշենի կարի ֆաբրիկայում, Փանիկի մասնաճյուղում, Լեռնակերտի, Սարալանջի, Պեմզաշենի սովխոզներում, Գեղանիստի կոլտնտեսությունում, շինարարական և տրանսպորտային մի շարք կազմակերպություններում:

Բազմաթիվ կազմակերպություններում դեռևս չի գոհացնում տնտեսագիտական կրթության որակը: Պարապմունքները հաճախ վերածվում են արտադրական խորհրդակցությունների, պրոպագանդիստների որոշ մասը արագորեն չի վերափոխվում նոր պայմաններում աշխատելու պահանջներին համապատասխան, շատերը խորությամբ չեն տիրապետում քաղաքական, տնտեսագիտական հիմնավոր գիտելիքների, տնտեսական վերլուծության այսօրվա մեթոդներին, անհատական աշխատանքի կազմակերպման սկզբունքներին: Ոչ բոլոր տնտեսական ղեկավարներն ու սկզբնական արհմիութենական կազմակերպություններն են շահամետ մոտեցում հանդես բերում ուսուցման նպատակային կազմակերպման, գործնական հատույցի ապահովման խնդիրների լուծման նկատմամբ: Հասարակական հիմունքներով ստեղծված քաղաքական և տնտեսագիտական կրթության կաբինետների զգալի մասը անբավարար է գործում: Կուսշրջկոմը, նրա պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը ջանքեր են գործադրում քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության կազմակերպիչների ու ղեկավարների պատասխանատվությունը, պարապմունքների գաղափարախոսական մակարդակը բարձրացնելու համար: Մեր շրջանում կան բոլոր նախադրյալները այդ աշխատանքը արդյունավետ ու ներգործուն դարձնելու, համամիութենական XIX կուսակցական կոնֆերանսը աշխատավորների գաղափարական կոփվածքի գործում ձեռք բերած հաջողություններով դիմավորելու համար:



# ԳԻՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՉԱԿԱՆ ՈՐՈՇՈՒՄԸ

**Մ. ՄԻՆԱՍՅԱՆ**

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ զարգացման հակասությունների հաղթահարումը առաջ է բերում սոցիալ-տնտեսական և հոգևոր կյանքի վերակառուցման անհրաժեշտություն, որի հիմնական օղակներից է կառավարման համակարգի ամբողջական կատարելագործումը: Անհրաժեշտ է այդ համակարգը համապատասխանեցնել վերակառուցման խնդիրների լուծմանը, ապահովել հասարակական կյանքի կազմակերպական ամբողջականությունը և կայունությունը՝ որպես հեղափոխական նորացման հզոր միջոց: Դա հնարավորություն կտա օպերատիվ կերպով արձագանքել և ուղղություն տալ երկրում կատարվող փոփոխություններին:

Կառավարումը, որպես մարդկային գործունեության յուրահատուկ տեսակ, այսօր նպատակ ունի ռացիոնալ փոխադարձ կապեր ապահովել հասարակական կյանքի տարբեր ոլորտների, սոցիալական կազմավորումների գործառության և զարգացման պրոցեսների միջև: Իսկ դա ամենից առաջ նշանակում է կառավարչական գիտակցական ազդեցություններով մշտապես ներգործել զանգվածների ստեղծագործական աշխատանքի, նախաձեռնության ու ակտիվության վրա, մշտապես բացահայտել դրանց զարգացման աղբյուրները:

Սուբյեկտիվ գործոնի դերի աճի պայմաններում, երբ աննախընթաց չափերով մեծացել է գիտական կառավարման նշանակությունը, կենսականորեն անհրաժեշտ է բարձրացնել վերակառուցման բոլոր պրոցեսների և ոլորտների կառավարելիության մակարդակը: Դա է, որ կարող է հասարակական արտադրությանը իրական հնարավորություններ ընձեռել խթանելու իր գործառնության սոցիալական արդյունավետությունը, բավարարելու մարդկանց պահանջմունքները, կողմնորոշվելու դեպի նրանց համակողմանի զարգացումը, առավել չափերով իրացնելու գիտատեխնիկական առաջադիմության նվաճումները: Այս ամենին հասնելու համար,— նշում է Մ. Ս. Գորբաչովը,— հարկավոր է իրականացնել բոլոր մակարդակներում ղեկավարման առավելապես վարչական մեթոդներից անցումը առավելապես տնտեսագիտական մեթոդների, կառավարման լայն դեմոկրատացման, մարդկային գործոնի ըստ ամենայնի ակտիվացման:

Կառավարման արդյունավետության բարձրացման հիմնական օղակներից է կառավարչական որոշումների կատարելագործումը: Դրանց գիտական հիմունքներով մշակումը և ընդունումը կառավարչական որոշումը դարձնում է արտադրական և հասարակական հարաբերությունների կատարելագործման գործուն լծակ:

Կառավարչական որոշումը կառավարման նման բարդ է ու կոմպլեքսային: Այն հանդիսանում է սոցիալ-տնտեսական և հոգևոր կյանքում գիտական կազմակերպական հիմունքների ներդրման կարևոր միջոց, որոշիչ գործոն՝ կառավարման վրա գիտության ազդեցությունը ուժեղացնելու համար: Գիտական կառավարումն ամենից առաջ հիմնավորված որոշում է ենթադրում: Կառավարչական որոշումների նախապատրաստումն ու ընդունումը գիտության և պրակտիկայի կապի առանձնահատուկ ոլորտ է: Կառավարումը տեսականի հետ միասին օպերատիվ գործողության գիտություն է: Արդյունքում սոցիալական գիտական ստեղծագործությունն է, որը պահանջում է որոշումներ ընդունելիս ղեկավարվել գիտական մեթոդներով:

ՄԻՆԱՍՅԱՆ ՄԻՔԱՅԵԼ ՄԿՐՏՉԻ— փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, Երևանի բժշկական ինստիտուտի գիտական կոմունիզմի ամբիոնի վարիչ:

Սոցիալիստական հասարակության բնույթին կառավարչական որոշումների համապատասխանության պայմանը դրանցում տարբեր գիտությունների որոշակի բնագավառների նպատակասլաց օգտագործումն է: Դա ամենից առաջ վերաբերում է այն կոնկրետ գիտություններին, որոնց առնչվում է որոշման օբյեկտ հանդիսացող կառավարման համակարգը և ապա՝ սոցիոլոգիային, փիլիսոփայությանը, տնտեսագիտությանը, իրավագիտությանը, կիբեռնետիկային, մաթեմատիկային, հոգեբանությանը, ինժեներատեխնիկական գիտություններին: Ընդ որում գիտական առաջարկները ոչ միայն հիմք են դառնում կառավարչական որոշումների ընդունման համար. այլև անմիջականորեն մասնակցում են կառավարման պրոցեսին:

Այս առնչություններում հատկապես կարևորվում է մարքսիստական փիլիսոփայության դերը կառավարչական որոշումներում գիտական հիմունքների արմատավորման գործում: Սա, ըստ էության, փիլիսոփայության կառավարչական ֆունկցիայի իրացման ձևերից է, որի համար որոշիչ է այլ գիտությունների հետ նրա կապերի բացահայտումը: Այս առումով առանձնահատուկ իմաստ ունի կոնկրետ ուսումնասիրությունների հարաբերակցությունը սոցիոլոգիական տեսության, փիլիսոփայական իմացությունների հետ: Տեսական ընդհանրացումների միջոցով հնարավոր է դառնում փաստերի ու պրոցեսների փոխազդեցությունների հիման վրա բացահայտել դրանց միասնության և ամբողջականության պատկերը:

Կառավարչական որոշումների ընդունման պայմաններից է գիտական մեթոդների կիրառումը: Այժմ ավելի քան մեծանում է պրոբլեմային մոտեցման համակարգված ուսումնասիրությունների օգտագործման նշանակությունը: Դրանք նպաստում են, որպեսզի կառավարչական որոշումն արտահայտի հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքները, որոնց իմացությունն ու պահանջների գիտակցված իրացումը դրսևորվում են կոնկրետ պայմաններում, կոնկրետ համակարգերում: Ըստ էության, կառավարչական որոշումը տվյալ համակարգի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների սուբյեկտիվ դրսևորումն է:

Կառավարչական որոշումների ընդունման և գիտական կառավարման կարևոր նախադրյալներից է արտադրական հարաբերությունների այն բաղկացուցիչների վերափոխումը, որոնք արգելակում են արտադրողական ուժերի զարգացումը: Առաջացած պրոբլեմների գիտական վերլուծությունը, դրանց պատճառների ու միտումների բացահայտումը և համապատասխան ուղիների կանխանշումը հակասությունների հաղթահարման միջոցով ապահովում են նոր առաջընթաց:

Յուրաքանչյուր աշխատողի և կոլեկտիվի գործունեության բնույթը կանխորոշվում է սեփականության ձևերի հարաբերությունների էությամբ և դրանց իրացման եղանակով: Այստեղից էլ մեր երկրում սոցիալիզմի զարգացման ժամանակակից փուլում այդ հարաբերությունների այնպիսի կատարելագործման անհրաժեշտությունը, որը հանգեցնում է յուրաքանչյուրի մեջ հանրային սեփականության տիրոջ, դրանով նաև գործի տիրոջ գիտակցության: Մինչդեռ, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում, «... սոցիալիստական սեփականությունը... հաճախ ներսից կրծոտվում էր գերատեսչականությամբ և տեղայնությամբ, դառնում էր ասես «ոչ մեկինը»՝ ձրի, իրական տեր չունեցող, շատ դեպքերում էլ սկսել էր օգտագործվել անաշխատ եկամուտների կորզման համար»: Սա է, որ սոցիալ-տնտեսական կյանքի բազմաքանակ ոլորտներում այնպիսի հակասությունների ծնունդ է տալիս, որոնք հանգեցնում են սոցիալական, տնտեսական և հոգևոր բնույթի հսկայական կորուստների: Դա ոչ այլ ինչ է, եթե ոչ հասարակության անբավարար կառավարման պատճառով կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի հիմնական առավելության իրացման արգելակում: Սոցիալիստական հասարակարգում սեփականատիրական հարաբերությունների և արտադրողական ուժերի միջև չկա հակամարտ հակասություն: Դա ռեալ հնարավորություններ է ընձեռում այդ ոլորտում սուբյեկտիվ պատճառներով առաջացող բոլոր հակասությունների հաղթահարման համար: Կարևոր է, որպեսզի հասարակության սոցիալ-տնտեսական և հոգևոր կյանքի բոլոր ոլորտներին վերաբերող որոշումներում հիշյալ հանգամանքը նկատի առնվի որպես դրանց արդյունավետ կատարման ելակետ, ուրեմն և գիտականություն ապահովող լծակ:

Կառավարչական որոշումներում գիտականության արմատավորման նախապայմաններից է դրանց հեղինակների մտավոր և ստեղծագործական պոտենցիալի լրիվ օգտագործումը, քանզի որոշման նախապատրաստումն ու ընդունումը վերջին հաշվով մարդկանց իմացողական ու անալիտիկ գործողությունների մի ամբողջ կոմպլեքս է: Դա ինքնին ուժեղացնում է գիտակցական ազդակների դերը, որով և



մեծանում է կառավարման սուբյեկտի գործունեության արդյունավետությունը: Այստեղ կարևոր է առօրյա, սովորական գիտակցության բարձրացումը գիտականի մակարդակի: Այս ամբողջ պրոցեսում ամենից ավելի որոշիչ են մտածողության այլընտրանքային բնույթը, ստեղծված իրավիճակի բազմակողմանի սթափ գնահատումը: Վ. Ի. Լենինը կառավարիչի համար առաջնային էր համարում կառավարման գիտության տիրապետումը, սակայն, այստեղ պահանջվում է նաև գիտելիքների հաստատուն տիրապետում և, որ կարևոր է, դրանց սինթեզում: Այս ամենի հետ միասին և այս ամենի հիման վրա չի կարելի «... կառավարել առանց ձեռնհասության, ... կառավարելու համար պետք է գիտենալ գործը...» (**ԵԼԺ**, հ. 40, էջ 267—268):

Կառավարիչների վերաբերյալ լենինյան այս դրույթներն իրենց մարմնավորումն են գտնում կուսակցության ժամանակակից կադրային քաղաքականության մեջ: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում, ներկայումս առաջին պլան են մղվում անհաշտությունը թերությունների, հնամոլության, անտարբերության և պասսիվության նկատմամբ, նվիրվածությունը ամենայն առաջավորին և առաջադիմականին: Պլենումում կարևորվեց վերակառուցման և կադրերի մտավոր պոտենցիալի հարստացման անխզելի կապը: «Վերակառուցումը աշխատողներից պահանջում է բանիմացություն և բարձր պրոֆեսիոնալիզմ,— նշում է Մ. Ս. Գորբաչովը:— Այսօր յոլա չես գնա՝ առանց ժամանակակից և բազմակողմանի պատրաստության, առանց արտադրության, գիտության և տեխնիկայի, կառավարման, էկոնոմիկայի, աշխատանքի կազմակերպման ու խթանման, հոգեբանության հարցերում խոր գիտելիքների»: Կառավարչի սոցիալական գործունեությունը պայմանավորված է նրա բարոյական-գաղափարական գիտակցականությամբ՝ նկատի առնելով, որ այսօր որոշիչ է կառավարչական գործունեության սոցիոլոգիական և հոգեբանական տեսանկյունը: Այստեղից էլ գիտական հիմունքներով որոշումների ընդունման համար սոցիալական օրենքների վերաբերյալ գիտելիքների խորացման, այդ օրենքների իրացման մեխանիզմի իմացության անհրաժեշտությունը, որպեսզի դրանք դառնան կառավարչական գործունեության կանոններ: Այստեղ կարևոր է իմացությունն այն իրողության, թե ինչպես են համակարգի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները գործում և միմյանց հետ փոխազդվում մարդկանց հարաբերությունների և գործողությունների միջոցով: Դա կարող է իր նպաստը բերել՝ պարզելու համակարգի կազմակերպվելու և կառավարվելու հնարավորություններն ու կարողությունները:

Կառավարչական որոշման գիտականությունը կոնկրետության, ռեալության հետ միասին ենթադրում է նաև սոցիալ-տնտեսական և սոցիալ-հոգեբանական գործոնների ներդաշնակություն: Այս ամենի ամբողջությունը որոշումների ընդունման մեթոդաբանական հիմքն է: Վերջինս հնարավորություն է ընձեռում հասնելու ոչ միայն տնտեսական առաջադիմության, այլև սոցիալական և հոգևոր որոշակի արդյունքների: Գիտական կառավարման կարևոր խնդիրը այդ երկուսի ներդաշնակումն է: Ոչ միայն քաղաքականությանը, այլև սոցիալական-հոգևոր կյանքին կարող է վերաբերել լենինյան այն դրույթը, որ «... քաղաքականությունը չի կարող առաջնություն չունենալ էկոնոմիկայի նկատմամբ» (**ԵԼԺ**, հ. 42, էջ 345): Գիտականորեն հիմնավորված կառավարչական որոշումների ընդունումը պահանջում է կոմպլեքսային մոտեցում: Այլ կերպ անհնարին է լուծել նաև որևէ կոնկրետ խնդիր: «... Ով ձեռք է զարկում մասնավոր հարցերին՝ առանց ընդհանուր հարցերը նախապես լուծելու,— գրում է Վ. Ի. Լենինը,— նա անխուսափելիորեն ամեն քայլափոխում իր համար անգիտակցորեն «դեմ է առնելու» այդ ընդհանուր հարցերին» (**ԵԼԺ**, հ. 15, էջ 451): Կարևոր է, որպեսզի կոմպլեքսայնությունը դառնա յուրաքանչյուր կառավարչական ակտի էական հատկանիշը: Եթե այն կոմպլեքսային չէ, մի բան, որը բնորոշ է սոսկ մասնակի խնդիրներ առաջադրող կառավարչական շատ որոշումների համար, ապա նման որոշումները անխուսափելիորեն վերածվում են իրենց հակադրությանը: Գիտական կառավարման իրականացման պարտադիր պայմաններից են տվյալ համակարգին վերաբերող բոլոր որոշումներում հաջորդականության, ժառանգականության պահպանումը, դրանք փոխադարձ կապերի ու պայմանավորվածության, մեկ միասնության մեջ դիտելու սկզբունքի հետևողական իրացումը: Դա է, որ հնարավորություն է ընձեռում կառավարչական որոշումներում տեսնելու համակարգի գոյության և զարգացման կապերը: Դրանց ընդունումն անցնում է այնպիսի փուլերով և հաջորդականությամբ, որոնք, վերջին հաշվով, կազմում են մեկ ամբողջականություն:

Գիտականության գլխավոր չափանիշը սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի պահանջների հաշվառումն է: Սոցիալիստական կառավարումն իրականաց-

վում է,— գրում է Վ. Ի. Լենինը,— «... հասարակության **բոլոր** անդամների **լիակատար** բարեկեցությունը և ազատ **համակողմանի** զարգացումն ապահովելու համար» (**ԵԼԺ**, հ. 6, էջ 293): Իսկ այստեղ վճռորոշը անհատական, կոլեկտիվ և հասարակական շահերի ներդաշնակ զուգակցման նպատակով այդ պրոցեսների կառավարումն է, որտեղ էականը ենթաշահերի առկայությունն է՝ հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը: Վերջինի ընդգծումն ավելի քան կարևոր է՝ նկատի ունենալով հասարակության մեջ մասսայական տարածում ունեցող այն միտումը, երբ սկզբունքային նշանակություն ունեցող խնդիրները լուծելիս հասարակականի փոխարեն առաջին պլան են մղվում նեղգերատեսչական կամ տվյալ խմբի շահերը, կամ էլ, որ սոցիալ-բարոյական առումով ավելի արատավոր է, վերջինների շահերը ներկայացվում են իբրև հասարակական:

Գիտական կառավարման առնչությունների դրսևորման կարևոր ոլորտներից է սոցիալիստական բաշխման հարաբերությունների մշտական կատարելագործումը, որին առանձնակի նշանակություն է տրվում ՍՄԿԿ ծրագրում:

Խնդիրը հասարակական արտադրության զարգացման և նյութական ու հոգևոր բարիքների բաշխման, մարդկանց պահանջմունքների բավարարման փոխազդեցությունների այնպիսի մեխանիզմի ստեղծումն է, որը հանգեցնի երկուստեք ներդաշնակության: Դա նշանակում է, որ կառավարչական որոշումներում աշխատանքի արդյունավետության բարձրացման հիմնական միջոց է ոչ թե վարչական վերահսկողության ուժեղացումը, այլ տնտեսագիտական լծակների օգտագործումը, որը և այդ ոլորտում ՍՄԿԿ XXVII համագումարի մշակած քաղաքականության էությունն է: Այսինքն, պահանջմունքներն են, որ մղում են գործունեության, կանխորոշում նրա էությունը, արդյունավետությունը: Որոշիչ է այդ պրոցեսի գիտական կառավարումը, որի համար սոցիալիզմն ընձեռում է բոլոր հնարավորությունները: «Միայն սոցիալիզմը հնարավորություն կտա,— գրում է Վ. Ի. Լենինը,— արդյունքների հասարակական արտադրությունն ու բաշխումը լայնորեն տարածել և գիտական նկատառումներով իսկապես ենթարկել այն նպատակին, թե ինչպես բոլոր աշխատավորների կյանքը դարձնել առավել հեշտ և նրանց բարեկեցության հնարավորություն ընձեռող» (**ԵԼԺ**, հ. 36, էջ 467): Կարևոր է կառավարչական որոշումներում նաև այն գործոնի նկատառումը, որ արտադրությունն է ստեղծում պահանջմունք: Արտադրությունն ու սպառումը հասարակական զարգացման պրոցեսում հանդես են գալիս որպես հակադրություններ, որոնց միասնական գործառնության մեջ «պայքարը» գիտական կառավարման միջոցով դառնում է հասարակական առաջընթացի հզոր խթան: Սա զարգացման հանգեցնող հակասություն է և չի վերաբերում հասարակության սոցիալ-տնտեսական կյանքի այս բնագավառում սոցիալիզմի էությանն անհարիր հավասարություններին, որոնք դրսևորվում են հիմնականի՝ հասարակության կոլեկտիվիստական հիմքերի դեմ ոտնձգությունների մեջ, գործողության մեջ են դրվում արտադրության և բաշխման այնպիսի եղանակներ, որոնք նպաստավոր պայմաններ են ստեղծում անաշխատ եկամուտների ստեղծման, մարդկանց որոշ խմբերի հարստացման համար: Ակներև է, որ վերջինների պահանջմունքների բավարարման մակարդակը չի համապատասխանում հասարակության մեջ նրանց կատարած սոցիալական դերին: Նրանք իրենց շահերը հակադրում են հասարակության շահերին, հասարակական արտադրությունը ծառայեցնում իրենց հակահասարակական նպատակներին և հասնում են իրենց նկատմամբ սոցիալիստական հաշվառման և վերահսկողության չեզոքացմանը:

Առկա է բախումը սոցիալական արդարության և անարդարության միջև: Եվ ահա այսօր առաջնային նշանակություն է ստանում կառավարման ազդու լծակների օգտագործմամբ հետևողական պայքարը էգոիստական շահեր կրողների դեմ՝ նկատի ունենալով նաև այն ամենակարևորը, որ հասարակության մեջ նյութական բարիքների բաշխման ռեալ իրավիճակը հասարակական հարաբերությունների անմիջական ընկալման հիմնական միջոցն է, և բաշխման սոցիալիստական սկզբունքի խախտման ոչ եզակի բնույթ կրող հիշյալ հակասությունն իր հետ բերում է սոցիալ-բարոյական բնույթի այլ հակասություններ, այլ պրոցեսներ, երևույթներ, միտումներ: Նսեմանում է, օրինակ, հասարակական արդարության սկզբունքի տնտեսական, սոցիալ-բարոյական ազդեցությունը: Այս առնչություններում կարևոր է կառավարման մշտական ուշադրության կենտրոնում պահել այն հակասության հաղթահարումը, որ կա արտադրության միջոցների նկատմամբ իրավական և սոցիալական հավասարության ու



նյութական բարիքներից օգտվելու, բաշխման ոլորտում եղած անհավասարության միջև:

Սոցիալիստական հասարակությունը գիտակցորեն կազմակերպվող, պլանաչափ գործող և զարգացող հասարակություն է: Այդ պայմաններում գիտական հիմունքներով ընդունվող կառավարչական որոշումները վճռական նշանակություն ունեցող լծակներ են ամենաէականի՝ հասարակության պլանաչափ, համաչափ զարգացման օրենքի, իրացման համար: Այդ որոշումներն ուղղված են ընտրելու զարգացման ամենից ավելի իրական և հեռանկարային ուղղություններ, միջոցներ նախատեսելու և ապահովելու դրանց իրականացման համար: Այստեղ ամենից առաջ նկատի ունենք հասարակական արտադրության բնագավառը: Կառավարչական որոշումներում գիտականության արմատավորման համար կարևոր է այն ելակետային դիրքորոշումը, որ տնտեսական օրգանիզմը ամբողջական է և անհրաժեշտ է մշտապես նպաստել փոխելու արտադրողական ուժերի գործառնության հասարակական ձևերը, բարձրացնելու արտադրական հարաբերությունների հասունության մակարդակը՝ համակողմանի կատարելագործելով նրա բոլոր բաղկացուցիչները: Հասարակության սոցիալ-տնտեսական զարգացման ժամանակակից փուլում գիտական կառավարումն անհրաժեշտաբար ենթադրում է արտադրության զարգացումը սերտորեն զուգակցել գիտության և տեխնիկայի զարգացման հետ, այդ ոլորտում իրացնել հիմնավորված, դրանց կապերն ու հարաբերությունները նկատի առնող քաղաքականություն:

Կառավարչական որոշումների ընդունման բաղկացուցիչ մասն է արտադրության ռացիոնալացումը և՛ գիտատեխնիկական, և՛ սոցիալ-բարոյական մակարդակներում: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թվականի հունվարյան պլենումում, կարևոր է ուշադրության կենտրոնում պահել սոցիալական ոլորտի գերադաս զարգացումը, որոշման սոցիալ-բարոյական տարբեր կոմպոնենտների օգտագործման միջոցով հասնել արտադրական-տնտեսական գործունեության արդյունավետության բարձրացման և՝ ընդհակառակը:

Ավելի քան կարևոր նշանակություն է ստանում որոշումների՝ սոցիալ-բարոյական նոր մակարդակներում մարդկային հարաբերությունների զարգացման նպատակամղվածությունը: Մարդու սոցիալական գոյատևումը ենթադրում է հարաբերությունների մի բարդ համակարգ, որը նյութական և հոգևոր բարիքների արտադրությանը արդյունավետ ծառայեցնելու համար օբյեկտիվ անհրաժեշտություն է դարձնում գիտական մակարդակներում դրա կառավարումը: Ընդ որում ընդգծենք ոչ միայն ենթակաների հետ կառավարչի, այլև կառավարչի հետ ենթակաների ունեցած հարաբերությունների կատարելագործման սոցիալական կարևորությունը: Այդ հարաբերությունների իրացման համար ելակետային նշանակություն ունի մարքսյան դրույթն այն մասին, որ դրանց վերաբերող բոլոր հարցերը միաժամանակ սոցիալական են, որ բոլոր այն հարաբերությունները, որոնց մեջ մարդիկ գտնվում են միմյանց հետ, սոցիալական են (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс, соч., т. 4, стр. 301):

Գիտական կառավարումը հանգեցնում է տվյալ համակարգում սոցիալական-հոգևոր արժեքների, հարաբերությունների արդյունավետ արտադրության և վերարտադրության: Այդ պրոցեսում ներկայումս ավելի ազդու են դառնում մարդկային գործոնի վերարտադրության սոցիալ-հոգևոր արժեքները: Այստեղ առաջին պլան են մղվում տեխնիկայի զարգացման նկատմամբ մարդկային անձնային առնչությունների փոփոխումների նկատառումը: Կառավարչական որոշումներում հաշվի է առնվում այն իրողությունը, որ արտադրության բուն պրոցեսում մարդը կատարում է սոցիալ-բարոյական ֆունկցիաներ, ինչպես նաև տրամաբանական ակտիվ գործողություններ, որոնցով և արմատականորեն փոխվում են նրա տեղն ու դերը արտադրության մեջ:

Հետազոտության նյութ են դառնում և որոշումներում իրենց արտացոլումն գտնում աշխատանքից օտարման երևույթները: Աշխատանքից օտարումը սոցիալիզմի ժամանակ բարդ և տևական պրոցես է, որի հաղթահարումը կապված է աշխատանքի ֆունկցիոնալ բովանդակության հարստացման հետ: Վերջինը ձեռք է բերել ոչ միայն արտադրական-տեխնիկական, այլև սոցիալ-բարոյական արժեք և որպես այդպիսին էլ դարձել է կառավարման օբյեկտ: Ուստի համակարգի գիտական կառավարման ամբողջական պրոցեսում կարևորագույն ֆունկցիա է աշխատանքի արտադրական-տնտեսական, տեխնիկական և սոցիալ-հոգևոր կազմակերպումը: Այսօր էլ հրատապ է լենինյան այն դրույթը, որ «... սովետական իշխանության համար հատկապես աշխատանքի կազմակերպումն... ամբողջ հասարակական կյանքի ամենագլխավոր, արմատական և հրատապ հարցն է» (**ԵԼԺ**, հ. 36, էջ 182):

կրթական և կուլտուրական մակարդակի անընդհատ բարձրացումը սոցիալիստական ապրելակերպի անկապտելի մասն է:

Մի շարք բուրժուական հեղինակների (Մ. Մետյուզ, Պ. Հոլանդեր) կարծիքով, քանի որ ժամանակակից հասարակության մեջ մարդկայինն, այլ ոչ թե նյութական կապիտալն է դառնում տնտեսական աճի վճռական գործոն, տեղաշարժ է տեղի ունենում մարդկային կապիտալի կուտակմանը նախապատվություն տալու բնագավառում, ուստի և սոցիալիստական պետությունը մեծացնում է իր շահագրգռվածությունը կադրերի կրթության և պատրաստման արագ տեմպեր ապահովելու համար: Այդ կապակցությամբ նրանք նշում են, որ սոցիալիստական հասարակությունում կրթության ոլորտի զարգացումը ձեռք է բերում «անառողջ» բնույթ, քանի որ ուղղված է զուտ արտադրական կարիքներին և ոչ թե անհատի զարգացմանը: Դրանով իսկ փորձ է արվում հիմնավորելու ցանկացած հասարակարգում կրթության նպատակների միջև հակամարտության անխուսափելիության մասին թեզը, համաձայն որի կրթությունը կարող է դիտարկվել կա՛մ արտադրողի, կա՛մ էլ սպառողի տեսակետից: Մինչդեռ կրթության նպատակների հակամարտությունը բնորոշ է միայն կապիտալիզմին, քանի որ այն իրենից ներկայացնում է հենց այդ հասարակարգի հիմնական հակասության՝ աշխատանքի և կապիտալի հակասության, դրսևորման ձևերից մեկը: Բուրժուական տեսաբանները հասարակական տարբեր սիստեմների միջև եղած տարբերությունը տեսնում են ոչ թե նպատակների հակամարտության առկայության կամ բացակայության մեջ, այլ այն բանի, թե նպատակներից որին է նախապատվություն տրվում: «Սովետական կրթական համակարգը ուղղված է դեպի մեզ խորթ նպատակներին» (Grant N. Soviet Education.— Harmondsworth, 1979, p. 16.), պնդում են նրանք:

Սոցիալիստական կրթական համակարգի զուտ արտադրական կողմնորոշման ըմբռնումը նպատակ ունի սոցիալիզմի վրա տարածել հակամարտ հասարակարգի թերությունները: Ի տարբերություն կապիտալիզմի՝ սոցիալիստական կրթական համակարգը նրա արտադրության բարձրագույն նպատակի իրականացման կարևորագույն օղակն է, որը ռեալ պայմաններ է ստեղծում անհատի համակողմանի զարգացման համար: Սոցիալիստական հասարակարգում կրթական համակարգի տարբեր նպատակները լրացնում են միմյանց՝ գտնվելով դիալեկտիկական միասնության մեջ:

Բուրժուական որոշ սովետոլոգներ (Օ. Անվայլեր, Յ. Ֆեթչեր) առաջ են քաշում սոցիալիզմի օրոք «գործունեության ոլորտի ընտրության ազատության խզման» ըմբռնումը: Այդ «խզումը» նրանք կապում են սոցիալիստական էկոնոմիկայի պլանային բնույթի, մասնավորապես կադրերի պատրաստման պլանավորման հետ: Սակայն սոցիալիստական երկրներում գոյություն ունեցող կադրերի պատրաստման և վերապատրաստման համակարգը, որը ենթադրում է բարձրագույն և միջնակարգ մասնագիտական հաստատությունների ուսանողների պլանաչափ ընդունելություն ու թողարկում, ամենևին էլ չի նսեմացնում աշխատանքի կիրառման ոլորտի ազատ ընտրության ռեալ հնարավորությունները: Ընդհակառակը, այն պայմաններ է ստեղծում նրանց փաստացի իրացման համար, քանի որ պլանավորումն իրագործվում է տարբեր մասնագիտության կադրերի նկատմամբ ժողովրդական տնտեսության օբյեկտիվ պահանջները հաշվի առնելու հիման վրա: Այն նպաստում է ազատ աշխատատեղերի և պատրաստվող կադրերի կառուցվածքի միջև օպտիմալ համապատասխանություն ստեղծելուն, այսինքն՝ լրիվ և ռացիոնալ զբաղվածություն ապահովելուն, որը սկզբունքորեն անհնար է կապիտալիստական էկոնոմիկայի պայմաններում:

Անտեսելով այդ հանգամանքը՝ բուրժուական տեսաբանները հավատացնում են, որ գործունեության ոլորտի ընտրության անհատական ազատության ապահովման համար, իբր, անհրաժեշտ է և բավարար, որ կրթության տարբեր տեսակների ու աշխատատեղերի նկատմամբ առաջարկը փոխվի նրանց պահանջարկին համապատասխան: Ուստի, նրանց կարծիքով, այդ ազատության սահմանները որոշվում են սոցիալիստական տնտեսական մեխանիզմի մեջ շուկայական տարրերի ներթափանցման աստիճանով, իսկ քանի որ «կենտրոնական կառավարվող տնտեսությունում» ապրանքադրամական հարաբերությունները օտար մարմիններ են, գտնում են, որ անձի ազատությունը նվազագույնի է հասցված:

Պլանաչափության գռեհիկ մեկնաբանությունը, որը սոցիալիզմին վերագրում է մարդկանց դիրեկտիվ բաշխումը ըստ աշխատատեղերի և գործունեության ոլորտների՝ անկախ նրանց նախասիրությունների և հակումների, ոչ մի ընդհանուր բան չունի



իրականության հետ: Սոցիալիստական պետությունը պլանաչափորեն որոշում է հավաքական աշխատուժի հիմնական համամասնությունները, տարբեր մասնագիտությունների աշխատողների նկատմամբ ժողովրդական տնտեսության հեռանկարային պահանջը և դրա բավարարման աղբյուրները: Անհատական աշխատուժերի անհրաժեշտ տեղաշարժերի կարգավորումը գլխավորապես իրականացվում է նյութական խթանման համակարգի միջոցով, որն ամենևին էլ չի սահմանափակում քաղաքացիների անձնական ազատությունը:

Ներկայումս ՍՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունիսյան պլենումի որոշումներով արմատապես վերակառուցվում է տնտեսական մարմինների գործունեությունը, կենտրոնական պլանային մարմիններն իրենց ուշադրությունը հիմնականում կենտրոնացնելու են միայն ընդհանուր տնտեսական և միջճյուղային համամասնությունների ձևավորման, արտադրողական ուժերի նպատակահարմար տեղաբաշխման, ինվեստիցիոն քաղաքականության, գիտատեխնիկական առաջընթացի ուղղությունների սահմանման և մյուս գլոբալ խնդիրների վրա: Այժմ զգալիորեն ընդլայնվում են սոցիալիստական ձեռնարկությունների (միավորումների) իրավունքներն ու ինքնուրույն գործունեության հնարավորությունները, ամեն կերպ խրախուսվում է անհատական աշխատանքային գործունեությունը և կոոպերացիայի զանազան ձևերի զարգացումը: Այս պայմաններում պարզապես անիմաստ է դառնում խոսել ըստ աշխատատեղերի մարդկանց դիրեկտիվ բաշխման և քաղաքացիների անձնական ազատության սահմանափակման մասին:

Հենվելով իրենց իսկ կողմից կառուցված սոցիալիստական հասարակարգում զուտ արտադրական պահանջներին կրթական համակարգի լրիվ ենթարկվածության և «տոտալիտար» պետության ամենազորության մասին դոգմայի վրա՝ բուրժուական գաղափարախոսները պնդում են, որ սոցիալիզմի օրոք զգալիորեն իջել է կրթության որակը:

Այդ կեղծ թեզն «ապացուցող» դրույթներից է «ֆունկցիոնալ կրթություն» ըմբռնումը: Վերջինիս կողմնակիցները գտնում են, որ կրթությունը սոցիալիստական հասարակարգում, իբր, կրում է զուտ ուտիլիտար բնույթ, այսինքն հանգում է այն բանին, որ աշխատողներ են պատրաստվում միայն հստակ որոշված և խիստ սահմանափակ ֆունկցիաների կատարման համար: Նման չափազանց նեղ մասնագիտացումը, իբր, ոչ միայն շեղվում է անհատի համակողմանի զարգացման մասին մարքս-լենինյան դրույթներից, այլև թուլացնում է աշխատողի ստեղծագործական ակտիվությունը, ինչպես նաև կադրերի նկատմամբ հեռանկարային պահանջմունքի որակյալ կանխատեսման բացակայության հետևանքով կրճատում կրթության մասնագիտացման արդյունավետությունը:

Շարադրված ըմբռնման կողմնակիցները (Հ. Գրուտհոֆ, Թ. Դիտրիխ) աշխատուժի մասնագիտացումը բացառապես բխեցնում են արտադրության մասնագիտացումից: Մինչդեռ այդ պրոցեսներն ամենևին էլ նույնական չեն: Նրանց տարբերությունները առանձնապես հստակորեն են դրսևորվում գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում, երբ արտադրության մեջ անընդհատ տեխնոլոգիական փոփոխությունները պահանջում են ապահովել որակավորման միանգամայն նոր մակարդակ, երբ պրակտիկ հմտությունների հետ մեկտեղ կարևոր տեղ են զբաղեցնում հատուկ և ընդհանուր տեսական գիտելիքները, որոնք նպաստում են աշխատողի պրոֆեսիոնալ շարժունության աճին:

Սովետոլոգիական գրականության մեջ առանձնակի տեղ է զբաղեցնում այն ըմբռնումը, որի համաձայն սոցիալիստական հասարակարգում կրթության որակին, իբր, վնաս է հասցնում կրթական հնարավորությունների հավասարեցման իրականացման սկզբունքը: Նրա կողմնակիցները (Ջ. Բենթոք, Ռ. Բոյսոն, Ջ. Լուկաս) այն կարծիքին են, որ կրթության և կադրերի պատրաստման բնագավառում նման քաղաքականությունն, իբր, բացասական հետևանքների է հանգեցնում ինչպես ամբողջության վերցրած հասարակության, այնպես էլ առանձին անհատի համար: «Բոլորին նույն արշինով չափելու փորձը մեր քաղաքակրթության ապագայի ամենամեծ վտանգն է. այն արգելակում է առավել ընդունակ աշակերտների աճը՝ միաժամանակ օգուտ չբերելով տկարամիտներին» (Bantock G. H. Equality and Education.— In: Education, Equality and Society L., p. 150):

ՍՍՀՄ-ում կրթության համակարգի հիմքում ընկած իրենց իսկ կողմից հնարած «իքվոլիթըր» (հավասարարական) մոդելին նրանք հակադրում են, այսպես կոչված, կուլտուրական մոդելը, որի համաձայն յուրաքանչյուրը հնարավորություն ունի կըր-

թություն ստանալ իր ընդունակություններին համապատասխան և որը, իբր, արտահայտում է գործերի բուն վիճակը Արևմուտքի երկրներում:

Իրականում կրթության համակարգի դիֆերենցումը Արևմուտքի երկրներում կոչված է ամրապնդելու սոցիալական ստատուսի տարբերությունները, արգելակելու սոցիալական շարժունության աճը: Նման փաստը երբեմն խոստովանում են նաև բուրժուական տեսաբանները: Օրինակ, անգլիացի սոցիոլոգ Ռ. Բոյսոնի կարծիքով, սոցիալական շարժունությամբ շահագրգռված են հասարակությունն ու պետությունը, իսկ անհատը ցանկանում է միայն հանդարտություն և անվտանգություն: «Հզոր պետությունը պահանջում է արագ սոցիալական շարժունություն... այն դեպքում, երբ անհատը սեփական երջանկության համար ցանկանում է ավելի քիչ շարժունություն և ավելի շատ անվտանգություն» (Boyson R. Tne School Eguality and Society.— Jn: Education, Equality and Sosiety. L., 1985, p. 156):

Այս ըմբռնումը օբյեկտիվորեն արտահայտում է կապիտալիստական տնտեսական սիստեմի անկայունության աճը կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի ժամանակակից փուլում: Տնտեսական ճգնաժամերի աճող հաճախականությունը, կառուցվածքային պրոբլեմների սրումը, խրոնիկական ինֆլյացիան և զանգվածային գործազրկությունը հանգեցնում են աշխատավորների սոցիալ-տնտեսական դրության անկայունության ուժեղացմանը, նրանց տնտեսական ազատության փաստացի սահմանափակմանը: Ժամանակակից կապիտալիստական իրականությունն ավելի ու ավելի է բուրժուական տնտեսագետներին մղում այն համոզման, որ արդի հասարակության մեջ տնտեսական ազատությունը և, մասնավորապես, նրա կարևորագույն կողմը՝ աշխատանքի կիրառման ոլորտի ազատ ընտրությունը, կայունության, անվտանգության, լրիվ զբաղվածության ու այլ սոցիալական բարիքների հետ մեկտեղ, կազմում է հնարավոր երկընտրանքներից միայն մեկը:

Բուրժուական տնտեսագիտական գրականության մեջ ներկայումս զգալի տեղ է հատկացվում գործազրկության պրոբլեմին: Սովետոլոգները պնդում են, թե հակառակ գործազրկության վերացման սոցիալիստական երկրների պաշտոնական հավաստիացումների, այն դեռևս շարունակում է գոյություն ունենալ, թեկուզև շատ ավելի փոքր մասշտաբներով, քան Արևմուտքի երկրներում: Այդ թեզի տեսական հիմնավորման համար նրանք ձգտում են հաստատել «լրիվ զբաղվածություն» հասկացության անորոշությունն ու պայմանականությունը: Փորձ է արվում հավասարության նշան դնել արտադրության միջոցների հասարակական սեփականության և տընտեսության պլանաչափ վարման հիման վրա սոցիալիստական երկրներում ձեռք բերված լրիվ զբաղվածության և բուրժուական պետության տնտեսական քաղաքականության նպատակներից մեկը հանդիսացող լրիվ զբաղվածության միջև: Այդ նպատակի համար նրանք օգտագործում են պրոբլեմի քեյնսյան ըմբռնումը, որը ժամանակակից բուրժուական տնտեսագիտության մեջ շարունակում է գերիշխող դիրք գրավել:

Քեյնսի և նրա հետևորդների համար բնորոշ են պրոբլեմին ստատիկ մոտեցում ցուցաբերելը և ուշադրության կենտրոնացումը զուտ քանակական, ֆունկցիոնալ փոխկապվածությունների վրա: Այդ ըմբռնմամբ, լրիվ զբաղվածությունը հանգում է լոկ, այսպես կոչված, հարկադիր գործազրկության բացակայության և լիովին համատեղելի է նրա մյուս կատեգորիաների (ֆունկցիոնալ, կառուցվածքային, սեզոնային և այլն) գոյության հետ: Հենց սրանք էլ, իբր, կազմում են տխրահռչակ «գործազրկության բնական նորման», որի անհրաժեշտությունը ինչպես կապիտալիստական, այնպես էլ սոցիալիստական հասարակարգերի համար պնդում են բուրժուական տեսաբանները (Ս. Բրիթեն, Ջ. Բիլչինսկի, Պ. Լիլի):

Սոցիալիստական երկրներում աշխատանքային ռեսուրսների նկատմամբ կիրառվող տնտեսական քաղաքականությունը հենվում է զբաղվածության սկզբունքորեն բոլորովին այլ ըմբռնման վրա: Լրիվ զբաղվածության մարքսյան ըմբռնումը դիալեկտիկական է: Այն զարգանում է որպես սոցիալիստական կուտակման տեսության կարևոր տարր և կազմում է ազգաբնակչության սոցիալիստական օրենքի, աշխատանքի համընդհանրության կատեգորիայի տեսական մշակումների անքակտելի մասը:

Սովետական իշխանության առաջին տարիներին լրիվ զբաղվածության ապահովման խնդիրը հիմնականում հանգում էր միայն գործազրկության վերացմանը և նոր աշխատատեղերի ստեղծմանը: Այն լուծվեց սոցիալիստական ինդուստրացման տարիներին: Երբ սոցիալիզմի հաղթանակն արդեն լիակատար էր, լայն հնարավորու-



թյուններ ստեղծվեցին զբաղվածության սահմանների ընդարձակման և բնակչության հանրային արտադրության մեջ ընդգրկելու համար: Սոցիալիզմի արդի փուլում, երբ տնտեսությունը վերակողմնորոշվում է դեպի զարգացման ինտենսիվ ուղին, խնդիր է դրվում ոչ միայն պարզապես լրիվ, այլև միաժամանակ, առավել ռացիոնալ զբաղվածության ապահովման վերաբերյալ: Դա իր հերթին ենթադրում է բնակչության օպտիմալ ընդգրկում հանրային արտադրության մեջ, յուրաքանչյուր աշխատողի իր ցանկություններին, հակումներին, պրոֆեսիոնալ պատրաստվածության համապատասխան աշխատանքով ապահովում, արտադրության բոլոր ճյուղերին և տնտեսական շրջաններին պահանջվող քանակական ու որակական հարաբերակցությամբ անհրաժեշտ աշխատուժի ապահովում: Աշխատուժի օգտագործման բնագավառում սոցիալիստական պետության տնտեսական քաղաքականությունն ուղղված է հենց թվարկված խնդիրների կատարմանը:

Սովետոլոգների մեծ մասը, չնայած հրաժարվում է խոստովանել, որ սոցիալիստական երկրներում տեղ չկա գործազրկության համար, այնուամենայնիվ, հաստատում է, որ նրա մակարդակը չնչին է և կարելի է անտեսել, քանի որ առկա են զբաղվածության կայուն երաշխիքները: Նրանք փորձում են սոցիալիզմի ժամանակ լրիվ զբաղվածության ապահովումը ներկայացնել որպես ինչ-որ ինքնանպատակ բան, որը հաճախ ձեռք է բերվում տնտեսական մյուս պարամետրերի զարգացման կաշկանդման հաշվին: Այդ տեսակետի կողմնակիցները (Ֆ. Գրոսման, Ջ. Ֆեյվել, Մ. Ֆեշբախ) պնդում են, թե սոցիալիստական պետությունը, որպես մենաշնորհ ձեռնարկատեր, աշխատանքի շուկան մոդիֆիկացնում է այնպես, որ այն հնարավորության սահմաններում չբացահայտի աշխատուժի ավելցուկը:

Այդ հետազոտողները աշխարհին նայում են կապիտալիստական հասարակարգի պրոբլեմների պրիզմայի միջով, որոնց լուծումը սոցիալիզմն արդեն տվել է: Նրանց դատողությունները կառուցվում են այն նախադրյալի վրա, որ աշխատանքային ռեսուրսների առավել արդյունավետ վերարտադրություն ապահովում է շուկայական մեխանիզմը, որը, սակայն, միաժամանակ հանգեցնում է գործազրկության: Ուստի կապիտալի երկրներում գործազրկության դեմ պայքարը դիտվում է ինչ-որ ինքնուրույն, ավելի շուտ, նույնիսկ ոչ թե տնտեսական, այլ սոցիալական խնդիր: Դրան հակառակ սոցիալիստական երկրներում բնակչության լրիվ զբաղվածությունը բխում է արտադրության միջոցների հասարակական սեփականության և կենտրոնացված պլանավորման վրա հիմնված տնտեսավարման համակարգի առանձնահատկություններից: Այն սոցիալիստական վերարտադրության պրոցեսի բնորոշ գիծն է և նրա արդյունավետության անհրաժեշտ պայմանը: Սոցիալիզմի օրոք աշխատունակ բնակչությանը անհատական նախասիրություններին և ժողովրդական տնտեսության պահանջմունքներին համապատասխան աշխատանքով ապահովելու պրոբլեմը լուծվում է ոչ թե տնտեսական զարգացման մյուս նպատակներին ի վնաս, այլ նրանց համալիրի մեջ:

Քննադատության չի դիմանում նաև որոշ սովետոլոգների (Ա. Նոուվ, Ռ. Հաթչինգզ) մշակած այն ըմբռնումը, որի համաձայն գործազրկության վերացումը նրա դրսևորման բացահայտ ձևերով, իբր թե, իջեցնում է արտադրության արդյունավետությունը: Տնտեսական համակարգի ճկունության ապահովման համար առաջ է քաշվում աշխատանքի ռեզերվային բանակի անհրաժեշտության մասին թեզը: Սակայն, ինչպես Կ. Մարքսն է «Կապիտալում» ցույց տվել, այն իրենից ներկայացնում է զուտ կապիտալիստական երևույթ: Սոցիալիզմի օրոք, երբ կենտրոնացված կարգով պլանավորվում է ժողովրդական տնտեսությունը կադրերով ապահովելու պրոցեսը, աշխատանքի ռեզերվային բանակի անհրաժեշտությունը վերանում է: Միաժամանակ կապիտալիզմի զարգացման արդի փուլում գործազուրկների բանակը աստիճանաբար կորցնում է աշխատանքի ռեզերվային բանակի իր ֆունկցիան և վերածվում բանվորական ակտիվ բանակի հաշմանդամանոցի (տե՛ս Կ. Մարքս, **Կապիտալ,** հ. 1, Երևան, 1954, էջ 675): Այդ պրոցեսի արտացոլումներից մեկը կառուցվածքային և տեխնոլոգիական գործազրկությունների առաջացումն է, «Ֆունկցիոնալ-անիրազեկ մարդկանց» լայն կատեգորիայի ի հայտ գալը:

Հաշվի չառնելով, որ աշխատանքի խթանների որակական փոփոխությունները տեղի են ունենում սոցիալիզմի օրոք հակամարտ հակասությունների վերացման շնորհիվ, բուրժուական տեսաբանները նույնացնում են խթանման ձևերը տարբեր հասարակական համակարգերում: Սոցիալիզմի օրոք աշխատանքի խթանման անհրաժեշտությունը նրանք կապում են անհատի, այսպես կոչված, օտարման և աշ-

խատանքին որպես գնողության վերաբերվելու հետ: Այդ դեպքում «շուկայական սոցիալիզմի» և «երկու սիստեմների կոնվերգենցիայի» դիրքերից դատող սովետոլոգները (Ջ. Բրեսլաուեր, Դ. Նելսոն) սոցիալիստական սիստեմում բացառում են աշխատանքի նկատմամբ որևէ խթանի առկայությունը: Ի տարբերություն նրանց «կենտրոնական-կառավարվող տնտեսության» և «հրամանատարական էկոնոմիկայի» տեսության կողմնակիցների (Բ. Հոլեսովսկի, Պ. Ուայլզ) աշխատություններում փորձ է արվում հիմնավորել այն թեզը, թե սոցիալիզմի օրոք աշխատանքն ունի հարկադիր բնույթ: Նյութական խթանումը սոցիալիզմի օրոք այդ հեղինակները ձըգտում են ներկայացնել որպես օտար մարմին, որի գոյության հետ, սակայն, հարկ է հաշտվել, քանի որ նրանից ազատվել, միևնույն է, հնարավոր չէ: Մինչդեռ անձնական նյութական շահագրգռվածությունը կոմունիզմի ստորին փուլում ժողովրդական տնտեսության հաջող գործելու անհրաժեշտ պայման է, քանի որ այն սոցիալիզմին հատուկ՝ ըստ աշխատանքի բաշխման օբյեկտիվ տնտեսական օրենքի կոնկրետ արտահայտությունն է:

Խեղաթյուրելով սոցիալիզմի օրոք աշխատանքի նկատմամբ տնտեսական խթանումների էությունը՝ բուրժուական գաղափարախոսները միաժամանակ փորձում են ապացուցել սոցիալիստական երկրներում տեղ գտած նյութական խթանման կոնկրետ ձևերի անարդյունավետ լինելը: Այդ կեղծ անարդյունավետությունը նրանք ամենից առաջ բխեցնում են կոմունիստական հասարակարգում եկամուտների, իբր, «հավասարեցված» բաշխումից: Մինչդեռ ո՛չ ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքը, ո՛չ էլ ըստ պահանջմունքների բաշխման կոմունիստական սկզբունքը ոչ մի ընդհանուր բան չունեն հավասարեցվածության հետ, և, հետևաբար, սովետոլոգների կողմից առաջ քաշած «սոցիալիզմի օրոք արդյունավետության ու հավասարության հակասության» արտահայտությունը կորցնում է իր իմաստը:

Բուրժուական տնտեսագիտական գրականության վերլուծությունը ցույց է տալիս, որ սոցիալիզմի օրոք աշխատուժի վերարտադրության մասին մեկնաբանություններում օգտագործվում է ժամանակակից բուրժուական քաղաքատնտեսության մեթոդների և միջոցների ողջ զինանոցը: Այնուամենայնիվ, նրանց առաջադրած դրույթները տեսականորեն և մեթոդաբանորեն պիտանի չեն: Դա առանձնապես հստակ է դրսևորվում ռեալ իրականության հետ բախվելիս, վերջինս համոզիչ վկայում է, որ միայն սոցիալիզմն է ի վիճակի ապահովելու հասարակության գլխավոր արտադրողական ուժի համակողմանի զարգացումը և աշխատուժի ռացիոնալ օգտագործումը:

---

# ՀԻՄՆԱՎՈՐՎԱԾ ՏԱԳՆԱՊ

## ԸՆՏԱՆԻՔԻ ՃԳՆԱԺԱՄԸ ԱՐԵՎՄՈՒՏՔՈՒՄ

**Հ. ՀԱԿՈԲՅԱՆ**

ԸՆՏԱՆԻՔԸ, ԻԲՐԵՎ ՄԱՐԴԿԱՅԻՆ հանրության ձև, իր մեջ զուգակցում է միանգամայն առանձնահատուկ կենսաբանական, կենցաղային, բարոյական և, ամենակարևորը, սոցիալական երևույթներ, որոնք հանդես են գալիս ամբողջական համակարգի ձևով և արտացոլում, մի կողմից՝ նրա անդամների, մյուս կողմից՝ նրա և հասարակության կապերը:

Ընտանիքը հասարակության բջիջն է և անսահման մեծ է նրա դերն ու նշանակությունը հասարակության կենսագործունեության մեջ: Այդ կապակցությամբ էլ Ֆ. Էնգելսը գրել է. «Մատերիալիստական ըմբռնման համաձայն՝ պատմության մեջ որոշիչ մոմենտը վերջին հաշվով անմիջական կյանքի արտադրությունն ու վերարտադրությունն է: Բայց սա ինքն էլ, դարձյալ, երկու տեսակ է լինում. մի կողմից՝ գոյամիջոցների, այն է՝ սնունդի, զգեստի, բնակարանի և դրանց պատրաստման համար անհրաժեշտ գործիքների արտադրությունը. մյուս կողմից՝ մարդու իրեն արտադրությունը, սերնդի շարունակումը: Այն հասարակական կարգերը, որոնց մեջ ապրում են որոշ պատմական դարաշրջանի և որոշ երկրի մարդիկ, պայմանավորվում են արտադրության այդ երկու տեսակներով. մի կողմից՝ աշխատանքի զարգացման, մյուս կողմից՝ ընտանիքի զարգացման աստիճանով» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս. **Ընտիր երկեր երեք հատորով, հ. 3,** «Հայաստան» հրատ. 1978, էջ 245):

Ընտանիքի, նրա հասարակական դերի ու նշանակության մատերիալիստական ըմբռնումը հնարավորություն է ընձեռում բացահայտելու ժամանակակից բուրժուական ընտանիքի ճգնաժամի պատճառները: Ընտանիքի պրոբլեմը բուրժուական հասարակության հնագույն պրոբլեմներից է, որը զբաղեցրել է նորելուկ բուրժուազիայի գաղափարախոսների միտքը դեռևս կապիտալիզմի արշալույսին:

Ժան-Ժակ Ռուսոն ընտանիքը համարում էր «հասարակություններից հնագույնը և միակ բնականը ու նրանում տեսնում «քաղաքական հասարակությունների» առաջին մոդելը, որտեղ հայրը հիշեցնում է ղեկավարին, զավակները՝ ժողովուրդը: Բոլոր զավակները, Ռուսոյի կարծիքով, «ծնված են հավասար ու ազատ», բայց զիջում են իրենց ազատությունը «սոսկ իրենց օգտակարության համար»: Եվ ամբողջ տարբերությունը ընտանիքի և պետության միջև այն է, որ «ընտանիքում հոր սերը իր զավակների հանդեպ արտահայտվում է նրանց նկատմամբ ցուցաբերվող խնամքով, իսկ պետության մեջ կարգադրելու հաճույքը փոխարինում է սիրուն, որը ղեկավարը չի տածում իր հպատակների նկատմամբ» (J.—J. Rousseau. Le Contrat Social. P. 1927, p. 18):

Իբրև սոցիալական կատեգորիա, հասարակության փոխվելու հետ ընտանիքը կրում է էական փոփոխություններ, որոնք արտացոլվում են մի կողմից՝ ընտանիքի անդամների, մյուս կողմից՝ ընտանիքի և հասարակության հարաբերություններում: Հիշենք, թե ինչպես էին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը «Կոմունիստական կուսակցության մանիֆեստում» բնութագրում կապիտալիզմի հաստատմամբ ընտանեկան հարաբերություններում տեղի ունեցած փոփոխությունները՝ շեշտելով, որ «բուրժուազիան պատռեց սրտաշարժ-սենտիմենտալ քողը ընտանեկան հարաբերություններից և դրանք վերածեց զուտ դրամական հարաբերությունների»: Բուրժուական ընտանիքի այս յուրահատկությունն այնքան տիպական էր, որ դարձավ քննադատական ռեալիզմի վիպագրության և դրամատուրգիայի առավել տարածված թեմաներից մեկը: Այսօր էլ գլխավորապես «զուտ դրամական հարաբերությունների», այսինքն՝ նյութական, ավելի լայն առումով սոցիալական հանգամանքների, պատճառով ընտանիքը սուր ճգնաժամ է ապրում Արևմուտքի շատ երկրներում, որը առաջացրել է հիմնավորված տագնապ բուրժուական սոցիոլոգների, քաղաքագետների, տնտեսագետների և ժողովրդագիրների շրջանում: Ժամանակակից բուրժուական մտածողների մոտ հետզհետե ավելի ու ավելի պարզորոշ է դառնում այն ճշմարտության գի-

---

ՀԱԿՈԲՅԱՆ ՀԱԿՈԲ ՎԱՀԱՆԻ— պատմական գիտությունների թեկնածու, ԽՊՀ-ի ՍՄԿԿ պատմության ամբիոնի դոցենտ:

տակցումը, որ հասարակությունն անջրպետված չէ իր բջիջներից և կարող է առողջ ու կենսունակ լինել սոսկ այն ժամանակ, երբ անհրաժեշտ մակարդակի վրա են նրա բջիջների ընդհանուր միջին առողջությունն ու կենսունակությունը:

Ընտանիքի ճգնաժամը տեղի ունի Արևմուտքի շատ երկրներում, սակայն առավել տիպական օրինակը Ֆրանսիան է, թեև հենց այդ երկրում կառավարությունը զգալի միջոցներ է ծախսում ամուսնությունը խրախուսելու և ընտանիքն ամրապնդելու համար: Անցյալ տարվա բյուջեի նախագծում այդ նպատակով նախատեսված էր երեք միջոցառում, որոնցից ամենակարևորը՝ այսպես կոչված «ընտանեկան փայաբաժնի», այսինքն՝ երեխաների համար պետության եկամտից ընտանիքներին տրամադրվող նպաստի չափերի փոփոխումն էր, որի ծախսերը կազմելու էին 300 մլն ֆրանկ (տե՛ս «Le Monde», édition internationale du 11 au 17 septembre, 1986): «Յումանիտե»-ից իմանում ենք, որ 1945 թ. ի վեր, երբ սահմանվեցին ընտանեկան նպաստները, 1987 թ. հունվարի մեկին, դրանք առաջին անգամ չվերագնահատվեցին (տե՛ս «L' Humanité», 28 janvier 1987):

Ամեն դեպքում ընտանեկան նպաստները՝ վերագնահատված թե չվերագնահատված, նպատակ ունեն խրախուսելու սերնդի նորոգումը: Հենց այդ պատճառով էլ Ֆրանսիայի օրինակը հատկապես տիպական է, քանի որ, հակառակ պետության բոլոր ջանքերին, ոչ մի կերպ չի հաջողվում լուծել ընտանիքի արդեն խրոնիկական դարձած պրոբլեմը և ձերբազատվել ազգին սպառնացող ծերանալու վտանգից:

Մասնագետները բնակչության «պտղաբերության» աստիճանը ճշգրտելու համար ծնելիությունը համեմատում են երեխա ունենալու ունակ կանանց թվի հետ: Այդ դեպքում պարզվում է, որ Ֆրանսիայի վիճակը պարզապես աղետալի է, որովհետև, եթե 1964 թ. երեխա ունենալու ունակ յուրաքանչյուր հազար կնոջ հաշվով ծնվել է 290 երեխա, ապա 1984 թ.՝ միայն 180, այսինքն՝ ցուցանիշը 2,9-ից իջել է մինչև 1,8-ի: 1987 թ. ցուցանիշը 1,9 է, մինչդեռ հասարակության լոկ պարզ վերարտադրության համար հարկավոր է, որ այն լինի 2,1:

Ժողովրդագրական հետազոտությունների ազգային ինստիտուտի տնօրեն Ժերար Քալոն այն կարծիքին է, որ ծնելիության հարցում երկրում նշանակալի առաջադիմություն չկա: Մինչև իսկ 1986 թ. համեմատաբար բարձր մակարդակը՝ 801 հազար ծնունդ, միևնույն է, չի ապահովում բնակչության պարզ վերարտադրությունը: Արդեն տասներեքերորդ տարին է, ինչ սերնդի նորոգում Ֆրանսիայում տեղի չի ունենում:

Նկատենք նաև, որ ծնելիությունը բնութագրող ցուցանիշի մեջ հաշվի են առնված նաև ոչ ֆրանսիացի ծնողներից ծնված երեխաները: Ընդ որում նրանց բաժինը, օրինական ծնունդների ընդհանուր թվում, 1975 թ. եղել է 10,8 տոկոս, 1982 թ. հասել է 12,3 տոկոսի, իսկ ապօրինի ծնունդների թվում համապատասխանաբար՝ 8,5 տոկոսից 14,5 տոկոսի:

Ապիսով, եթե օտարածիններին բացառենք, ապա զուտ ֆրանսիացիների շրջանում ծնելիության ցուցանիշը կդառնա 1,6: Այդ առթիվ Ալեն Կիմելը գրել է, որ 1985 թ. աշնանը կատարած ժողովրդագրական կանխատեսումների համաձայն՝ առաջիկա 30 տարում ամեն հինգ ֆրանսիացու դիմաց ծնվելու է երկու ոչ ֆրանսիացի (տե՛ս «Le français dans le monde» № 198, janvier 1986):

Անկասկած, այս հանգամանքն է՛լ ավելի իրական է դարձնում ֆրանսիական ազգի ծերանալու հավանականությունը: Մեկ հարյուրամյակի ընթացքում 65 տարեկանից բարձր տարիք ունեցողների թիվը Ֆրանսիայում արդեն կրկնապատկվել է: Հարցումների ժամանակ ֆրանսիացիների երկու երրորդն այն միտքն է հայտնում, որ արդի իրավիճակը լուրջ սպառնալիք է ազգի ապագայի համար, և դրությունը իդեալական կլիներ, եթե ծնելիության ցուցանիշը հասներ 2,5-ի: Իհարկե, նման ցուցանիշը մեկ այլ իրադրության մեջ կթվար խղճուկ, սակայն Ֆրանսիայի արդի իրավիճակում դա իսկապես իդեալ է, մի երկրի, որտեղ խնդրո առարկա չարիքն է՛լ ավելի է խորանում ամուսնալուծությունների հարաճուն ավելացման հետևանքով: Մյուս կողմից՝ հետզհետե նվազում է բազմանդամ և աճում անզավակ ընտանիքների թիվը:

Բնականաբար, բոլոր այս երևույթների բացասական հետևանքները, ամենից առաջ, ժողովրդագրական են: Եթե մինչև այժմ ենթադրվում էր, որ 2000 թ. Ֆրանսիայի բնակչությունը կհասնի 60 միլիոնի, ապա ծնելիության ցուցանիշի ներկա կորագծի պահպանման դեպքում Ֆրանսիան կունենա 58,8 մլն բնակիչ միայն 2010 թ.:

Ներկայումս արդեն Ֆրանսիայի 130 կենտրոններում գյուղական բնակչության 40 տոկոսի տարիքը 60 տարեկանից ավելի է: Հավանաբար, ստեղծագործական ունակության պակասը կդանդաղեցնի տեխնոլոգիական նորոգման ռիթմը, որը հարվածում է երկրի արտադրության մրցունակությանը արտաքին շուկայում, բացասաբար ազդում նաև երկրի ռազմական պոտենցիալի վրա: Ազգի ծերանալն իր ներգործությունն է ունենում սոցիալական ապահովության համակարգի վրա: Ներկայումս արդեն դժվարություններ կան տարեց մարդկանց կենսաթոշակով ապահովելու գործում, քանի որ յուրաքանչյուր 100 գործող քաղաքացուն ընկնում է 60-ից բարձր տարիք ունեցող 31 կենսաթոշակառու:

Ոմանք նույնիսկ գտնում են, որ բնակչության թերաճը գործազրկության աճի պատճառներից է, քանի որ կրճատվում է սպառումը, դպրոցական հիմնարկների, սպորտային հանդերձանքի, գույքի և շինությունների պահանջարկը: Ենթադրվում է, որ բնակչության թերաճի հետևանքով մեկ տասնամյակում կկրճատվի կես միլիոն աշխատանքային տեղ:

«Լը Մատեն» լրագիրը 1985 թ. հունվարին ուշադրություն էր հրավիրում մեկ այլ հանգամանքի վրա՝ գրելով, որ եվրոպական ղեկավարները թվում է թե չեն տեսնում, որ «երրորդ աշխարհի» ազգերի դեմ-հանդիման Ֆրանսիան և բոլոր արևմտյան երկրները կլինեն ժողովրդագրական ապարեզում տանուլ տվող երկրներ և, դա կունենա քաղաքական, տնտեսական ու սոցիալական լուրջ հետևանքներ (տե՛ս «Le Matin», 13 janvier 1986):

Մեկ սերունդ հետո, եզրակացնում էր թերթը, Եվրոպան կլինի թուլացած մայրցամաք, ծերացած՝ երիտասարդ, գործելու և աշխատելու ավյունով առլեցուն Աֆրիկայի և Ասիայի համեմատությամբ:

Հիրավի, զարգացող երկրներում, որպես կանոն, բնակչության բնական աճի տոկոսը անհամեմատ ավելի բարձր է, քան Արևմտյան Եվրոպայում և Հյուսիսային Ամերիկայում, որտեղ երբեմն նկատվում է նաև բնական աճի բացակայություն:

Ֆրանսիայում բնակչության բնական աճի ցածր մակարդակը շատերին ստիպում է հույս կապել օտարներին ներընկալելու (այսպես կոչված, «նատուրալիզացիայի» ենթարկելու, այսինքն՝ նրանց քաղաքացիություն շնորհելու) հետ, թեպետև, ինչպես հայտնի է, Անգլիայում, ԳՖՀ-ում և Ֆրանսիայում ներգաղթած օտարազգիները հենց քաղաքացիական իրավունքներ ձեռք բերելու տեսակետից բավական ծանր կացության մեջ են: Օրինակ՝ լիբերալ երկրի համբավ ունեցող Ֆրանսիայում Ժան Մարի Լը Պենը և նրա նեոֆաշիստական կուսակցությունը հանդես են գալիս «Ֆրանսիան ֆրանսիացիներին» շովինիստական լոզունգով, պահանջում ներգաղթածներին զանգվածաբար արտաքսել երկրից՝ երեսպաշտորեն պնդելով, թե ամեն մի աշխատող օտարերկրացի ֆրանսիացուց խլել է աշխատանքային տեղ:

Որո՞նք են ֆրանսիական, և ոչ միայն ֆրանսիական, հասարակության խրոնիկական անբավարար «պտղաբերության» իրական պատճառները և որքանո՞վ է այդ երևույթն առնչվում ընտանիքի ճգնաժամի երևույթին: Բուրժուական մասնագետների մեծ մասի կարծիքով, գլխավոր պատճառը հղիության դեմ գործադրվող միջոցների լիբերալացումն է (1967 թ. օրենքը) և աբորտը թույլատրելը (1975 թ. օրենքը) կամ ինչպես բնութագրում են այլ կերպ «հակահղիության հեղափոխությունը» և հղիությունը կամովին ընդհատելու ազատությունը: Սակայն Ա. Կիմելը գրում է, որ պատմության ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ծնելիության անբավարար մակարդակը շատ ավելի հին է, քան հղիությունն ընդհատելու միջոցների լիբերալացումը. օրենքը չէր կարող զարկ տալ այդ պրոցեսին, այլ սոսկ կարող էր ավելի խորացնել այն: Այդ հեղինակի կարծիքով ֆրանսիական հասարակության փոփոխությունները հետզհետե փոխել են ընտանիքների կերպարը՝ դրանց ավելի ու ավելի շեշտված «կորիզացման» իմաստով: Դա նշանակում է, որ ընտանիք հասկացությունն ավելի ու ավելի է սահմանափակվում «կորիզով», այսինքն՝ ամուսիններով: Բացի դրանից, գյուղական բնակչության զանգվածային ներհոսը քաղաքները, ուրբանիզացիան, կանանց աշխատանքի լայն կիրառումը վճռաբար նվազեցրել են երրորդ երեխայի ծնունդն ընտանիքում: Ա. Կիմելը նշում է, որ ներկայումս ընտանիքների 12 տոկոսը կցանկանար «ծրագրել» երրորդ երեխան ունենալ, բայց նյութական նկատառումներով ստիպված է հրաժարվել դրանից: Ռուդոլֆ Կալմանը ծնելիությունը նվազելու պատճառներից է համարում «ժամանակակից ինդիվիդուալիզմը», երբ գերապատվությունը տրվում է անհատին՝ սկսած ընտանիքից: Կալմանի համար «անհատի առաջնությունը մասսայի նկատմամբ» մինչև իսկ «որակի առաջնություն է քանակի նկատմամբ» (տե՛ս «Le Figaro», 22 janvier 1986):

Մեկ այլ հեղինակի՝ Բեռնար Կաթելայի տեսանկյունից երեխա ունենալուց հրաժարվելը կապված է ամուսնական զույգի ազատությանը, նրա ֆինանսական հոգսերի թեթևացմանը, սոցիալ-մասնագիտական ձևավորմանը խոչընդոտող արգելքները վերացնելու ցանկության հետ: Սակայն առավել լուրջ ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ հիշյալ երևույթների պատճառները նյութական են: Նույն նյութական պարագաների պատճառով աճում է ապօրինի ծնունդների թիվը: «Լը Մատենը» նշում է, որ արտաամուսնական կապերից ծնված երեխաները ներկայումս բոլոր ծնվածների մեկ հինգերորդն են, այն ժամանակ, երբ 1965 թ. նրանց թիվը չէր անցնում 6 տոկոսից (տե՛ս «Le Matin», 13 mars 1987):

Մարդիկ խուսափում են ամուսնությունից: Ս. Ի. Բրուկը գրում է, որ Եվրոպան և Հյուսիսային Ամերիկան աչքի են ընկնում ծնելիության ցածր մակարդակով և չափահաս-

միայնակների մեծ քանակությամբ: Մեկ հոգուց բաղկացած «ընտանիքի» բաժինն, ըստ Բրուկի տվյալների, Շվեդիայում 25,3 տոկոս է, ԳՖՀ-ում՝ 25,1, Ավստրիայում՝ 24,6, ԱՄՆ-ում՝ 16,7 տոկոս (տե՛ս С. И. Брук. Население мира. М., 1986, стр. 37, примеч. 13):

Ա. Կիմելը գրում է, որ Ֆրանսիայում 1985 թ. վավերացվել է ընդամենը 273 հազար ամուսնություն, որն ամենացածր մակարդակն է, եթե բացառենք 1914—1918 թթ. պատերազմի տարիները, երբ միանգամայն հասկանալի պատճառներով այդ պատերազմող երկրում (նաև Իտալիայում) ամուսնությունների թիվը շատ սակավ էր: Ըստ «Լը Մատենի» ամուրի է յուրաքանչյուր երկու մարդուց մեկը և այդ տեսակետից Ֆրանսիան առաջ է անցել Եվրոպայի մյուս երկրներից: Սակայն եթե Արևմտյան Գերմանիայում ծնելիության ցածր մակարդակն ընթանում է ամուսնությունից հրաժարվելու հետ զուգահեռ, ապա Ֆրանսիայում, ինչպես տեսանք, ընտանիք կազմելուց խուսափելու հետ մեկտեղ, ավելանում է ապօրինի ծնունդների քանակը:

Ինչպես տեսնում ենք, բուրժուական ընտանիքի ճգնաժամը չի կարելի բացատրել սոսկ բարոյականության և բարքերի անկումով: Այդ երևույթը նախ նյութական պատճառների հետևանք է:

Արևմտյան մամուլը և սոցիոլոգների ու ժողովրդագիրների մի զգալի մասն ստիպված են խոստովանել, որ սկզբնապատճառը նյութական ու սոցիալական գործոններն են, ամենից առաջ գործազրկության բարձր մակարդակը երիտասարդության շրջանում, որը խանգարում է աշխատանքի և ամուսնության տարիքի հասած պատանիներին ու աղջիկներին ստանձնել ընտանիք կազմելու և երեխաներ ունենալու պատասխանատվությունը: Ներկայումս Ֆրանսիայում մինչև 25 տարեկան մեկ մլն երիտասարդներ «աշխատանք են փնտրում»: Դա աշխատանքի ազգային գործակալությունում գրանցված գործազուրկների 40 տոկոսն է: 16—25 տարեկան ֆրանսիացիների սերնդի գլխավոր մտահոգությունն աշխատանք ճարելն է:

Ամբողջ աշխարհում տղամարդիկ ընտանիք են կազմում 25—29, կանայք՝ 20—24 տարեկանում, թեև օրենքը թույլատրում է ամուսնանալ ավելի վաղ տարիքում (տե՛ս նույն տեղը, էջ 33): Մինչդեռ 1986 թ. երիտասարդների մեկ քառորդը գործազուրկ էր Արևմտյան Գերմանիայում, Մեծ Բրիտանիայում, Իտալիայում և Ֆրանսիայում, ընդ որում վերջին երկու երկրներում համապատասխանաբար՝ ավելի քան 35 և 30 տոկոսը: Իսկ նրանց զգալի մասն էլ ունի միայն ժամանակավոր զբաղմունք կամ ապրում է պատահական վաստակով:

Երիտասարդությունը դժգոհ է իր սոցիալական վիճակից, թեպետև այդ դժգոհությունը չի արտահայտվում այնպիսի ծայրահեղ ձևով, ինչպես 60—70-ական թվականների «ուսանողական հուզումներն» էին, որոնք, ըստ ՄԱԿ-ի տվյալների, 1968 թ. ընդգրկեցին 50, իսկ 1971 թվականին՝ 70 երկիր (տե՛ս А. Грачев. Поражение или урок? Об опыте и последствиях молодежных и студенческих выступлений 60—70-ых годов на Западе. М., 1977, стр. 8): Ինչպես այն ժամանակ, երբ պոռթկաց երիտասարդության բուռն զայրույթը, այնպես էլ այժմ դժգոհության ամենագլխավոր դրդապատճառը գործազրկությունն է, նյութական անապահովվածությունը և հեռանկարի անորոշությունը, որոնք անդրադառնում են նաև ամուսնության ու ընտանիքի իրավիճակի վրա:

Գործազրկությունից բացի կան երիտասարդությանը վհատեցնող այլ պատճառներ՝ համաշխարհային նոր պատերազմի և միջուկային բախման վախը, անհաբեկչությունն ու բռնությունը, սովը աշխարհի մեծ մասում, տնտեսական ճգնաժամերը, շրջակա միջավայրի աղտոտումը, դրամի կարիքը, պատահարները, ընտանեկան գժտությունները և միայնակությունը:

Պատահական չէ, որ ՅՈՒՆԵՍԿՕ-ի XXI նստաշրջանին ներկայացված «Երիտասարդության միտումները 80-ական թվականներին» զեկուցագրում նշվում է, որ ընթացիկ տասնամյակում երիտասարդների կյանքը բնութագրող հիմնական չափանիշները կլինեն դրամազրկությունը, գործազրկությունը, գերորակավորումը, տագնապը, պաշտպանողական վարքագիծը, պրագմատիզմը: Անկասկած, այս ամենն է՛լ ավելի կսրի ընտանիքի ճգնաժամն Արևմուտքում, որը արտահայտվում է, մի կողմից, ամուսնության և ծնելիության տոկոսի շեշտակի անկումով, մյուս կողմից՝ այսպես կոչված, «նոր ընտանիքների» թվի ավելացումով, որոնց «ընտանեկան կյանքի» գլխավոր նշանաբանը դարձել է ապրել միասին՝ առանց ամուսնանալու, ամուսնանալուց հետո ունենալ մեկ-երկու երեխա կամ էլ բոլորովին չունենալ:

Ընտանիքի հետ կապված պրոբլեմներ կան և սոցիալիստական հասարակարգում: Սակայն դրանք միանգամայն այլ բնույթի են և բացառված են ընտանիքի ճգնաժամ ծնող պատճառները, ամենից առաջ, գործազրկությունը, թեև սովետական ընտանիքը ձերբազատված չէ ո՛չ նյութական հոգսերից (հատկապես սուր է նորապսակներին բնակարանով ապահովելու խնդիրը) ու այդ հողի վրա ծագող ընտանեկան անախորժություններից, ո՛չ էլ ամուսնալուծություններից:



ՍՄԿԿ-ն ընտանիքի հետ կապված պրոբլեմները համարում է լուծելի: Նրա մոտեցումն այդ հարցին կանխորոշված է ընտանիքի, նրա հասարակական դերի ու նշանակության մատերիալիստական ըմբռնմամբ: Կուսակցության ծրագրում շեշտվում է, որ «ՍՄԿԿ-ն հսկայական պետական նշանակություն է տալիս **ընտանիքի նկատմամբ հոգատարության ուժեղացմանը:** Ընտանիքը կարևոր դեր է խաղում մատաղ սերունդների առողջության ամրապնդման և դաստիարակության, հասարակության տնտեսական ու սոցիալական առաջադիմության ապահովման, ժողովրդագրական պրոցեսների բարելավման գործում: Այստեղ են ձևավորվում մարդու խառնվածքի հիմքերը, աշխատանքի, բարոյական, գաղափարական ու կուլտուրական արժեքների նկատմամբ նրա վերաբերմունքը» **(ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը,** էջ 215): Ուստի սովետական հասարակությունը կենսականորեն շահագրգռված է ամուր, հոգեպես ու բարոյապես առողջ ընտանիքով: Այդ իսկ պատճառով կուսակցությունն անհրաժեշտ է համարում վարել ընտանիքն ամրապնդելու, սոցիալական ֆունկցիաների կատարման, երեխաների դաստիարակման գործում նրան օգնելու, երեխաներ ունեցող ընտանիքների և նոր ընտանիք կազմողների նյութական, բնակարանային ու կենցաղային պայմանների բարելավման գիծ: Այդ հարցերի լուծումը կուսակցությունը դիտում է իբրև սովետական հասարակության հեղափոխական վերակառուցման էական խնդիրներից մեկը:

Վերակառուցումը, մասնավորապես տնտեսական բնագավառում, խորապես նպաստում է ընտանիքի համախմբմանն ու ամրապնդմանը: Դրան կնպաստեն հատկապես գյուղատնտեսական արտադրության մեջ ընտանեկան կապալի լայն տարածումը և անհատական աշխատանքային գործունեությունը ընտանեկան կոոպերատիվներում, որոնք կոչված են ապահովելու անձնական շահերի օպտիմալ զուգակցումը համապետական, համաժողովրդական շահերի հետ: Հազիվ թե հարկ կա ապացուցելու, թե որքան կարևոր են ընտանիքի անդամների համատեղ աշխատանքը, համատեղ պատասխանատվությունը, նյութական բարիքների և վաստակի համաձայնեցված բաշխումը: Նյութական գործոններով ամրապնդված ընտանեկան ներքին ներդաշնակությունը հուսալի երաշխիք է հոգեպես ամուր ու բարոյապես առողջ ընտանիք ունենալու համար:

# ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԵՏ ԿԱՊԵՐԻ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Ն. ՄԿՐՏՉՅԱՆ**

ԱՐԴԻ ԴԱՐԱՇՐՋԱՆԻ առանձնահատկություններից մեկը մասսայական դեմոկրատական շարժումների վերելքն է ոչ սոցիալիստական երկրներում: Այդ կապակցությամբ ՍՄԿԿ ծրագրում նշված է. «Այդ շարժումները օբյեկտիվորեն ուղղված են իմպերիալիզմի ռեակցիոն շրջանների քաղաքականության դեմ, միախառնվում են խաղաղության և սոցիալական առաջադիմության պայքարի ընդհանուր հոսանքին» (**ՍՄԿԿ XXVII համագումարի նյութերը**, էջ 189): Խաղաղության և սոցիալական առաջադիմության համար պայքարողների այդ մեծ բանակում են նաև ֆրանսաբնակ հայերի առաջադիմական երկու կազմակերպություններ՝ ֆրանսահայ երիտասարդական միությունը՝ (ԺԱՖ) և ֆրանսահայ մշակութային միությունը (ՖՄՄ): Ստեղծվելով հետպատերազմյան տարիներին, այդ կազմակերպությունները չորս տասնամյակ է, ինչ ամենաակտիվ կերպով մասնակցում են հանուն խաղաղության և ժողովուրդների բարեկամության աշխարհի առաջադեմ ուժերի մղած պայքարին:

ԺԱՖ-ը հիմնվել է 1945 թ. հուլիսին՝ հիմնականում Դիմադրության շարժման հայ մասնակիցների ուժերով: Այս խոսուն փաստն ապահովում էր կազմակերպության մեծ հեղինակությունը՝ իր շուրջը համախմբելու համայնքի երիտասարդության առաջադեմ մասին, զարգացնելու Դիմադրության շարժման ավանդները, լծվելու խաղաղասիրական երիտասարդական շարժմանն ընդդեմ նոր պատերազմի սպառնալիքի: 1947 թվականին ԺԱՖ-ը դառնում է Դեմոկրատական երիտասարդության համաշխարհային ֆեդերացիայի (ԴԵՀՖ) անդամ և այդ օրից ի վեր գործուն մասնակցում նրա կոնգրեսներին ու խաղաղասիրական նախաձեռնություններին: 1949 թվականից ԺԱՖ-ը Խաղաղության կողմնակիցների շարժման մասնակից է: Միությունը 1951 թվականից հրատարակում է իր օրգանը՝ «Նոտր Վուա» («Notre voix»— «Մեր ձայնը») ֆրանսերեն ամսաթերթը:

Ֆրանսահայ մշակութային միությունը հիմնադրվել է 1949 թ.: Շարունակելով ՀՕԿ-ի և Հայ ազգային ճակատի սկսած գործը, միությունն իր ծրագիրը դարձրեց ժողովուրդների միջև բարեկամության և մշակութային կապերի ամրապնդմանը ծառայելը: ՖՄՄ-ի գործունեությունը և գաղափարներն արտացոլվում են «Աշխարհ» թերթի էջերում: ԺԱՖ-ը և ՖՄՄ-ն նույն նպատակին զինվորագրված երկու առաջադիմական կազմակերպություններ են, որոնց գաղափարական և գործնական կապերը երկուստեք բեղմնավոր արդյունքներով են պսակում հայրենիքի հետ կապերի ամրապնդմանն ուղղված նրանց գործունեությունը:

Ֆրանսիայի հայ համայնքի և ընդհանրապես սփյուռքահայ առաջադեմ խավերի համար Սովետական Հայաստանն իր սոցիալական զարգացման աննախընթաց վերելքով և ձեռք բերած նվաճումներով օտար ափեր տարագրված հային սնող և հայապահպանմանը շունչ տվող իրական ուժն է: Ֆրանսիայի հայ համայնքի վերոհիշյալ առաջադիմական կազմակերպությունները ծառայում են սփյուռք-հայրենիք կապերի ընդլայնմանն ու ամրապնդմանը, ֆրանսահայության շրջանում մայր հայրենիքի հանդեպ սեր դաստիարակելու գործին: Այն բազմաթիվ հայրենասիրական միջոցառումները, որոնք իրականացնում են այս երկու կազմակերպությունները ինչպես միասին, այնպես էլ տարբեր հայրենասիրական կազմակերպությունների հետ, մեծապես նպաստում են ազգանվեր գաղափարների տարածմանը, սփյուռքահայերի ներգրավմանը հայրենանվեր աշխատանքներին, երիտասարդ սերնդի շրջանում Սովետական Հայաստանի հանդեպ սիրո ու հարգանքի դաստիարակմանը:

ՄԿՐՏՉՅԱՆ ՆԵՐՍԵՍ ԱԼԲԵՐՏԻ — ՀՍՍՀ ԳԱ սփյուռքահայ համայնքների պատմության և մշակույթի բաժնի կրտսեր գիտաշխատող:



Համայնքում գործող տարբեր միությունների, պարբերականների, կուսակցությունների քաղաքական բնորոշումը պայմանավորված է Սովետական Հայաստանի հանդեպ նրանց ունեցած վերաբերմունքով: Մայր հայրենիքի հանդեպ բացասական կամ դրական կողմնորոշումն այն չափանիշն է, որով սփյուռքահայ կազմակերպությունները դասակարգվում են հայաստանյան և հակահայաստանյան ուղղություններում: ՖՄՄ-ն և ԺԱՖ-ն իրենց ամբողջ գործունեությամբ կոչված են Սովետական Հայաստանի հետ ֆրանսահայ լայն խավերին կապելու գործին: Այս կազմակերպությունների, ինչպես և սփյուռքի բոլոր առաջադիմական ուժերի պայքարը մեծապես նպաստում է օտարության մեջ ապրող հայերին չկտրվելու հայրենի իրականությունից, օգտակար լինելու Հայաստանին, ապրելու նրա հաջողություններով ու զարգացմամբ, ինչպես նաև սատարում հայապահպանմանն ու համայնքի գոյատևմանը:

Հայրենասիրական խոշոր միջոցառում են Հայաստանում սովետական կարգերի հաստատման տարեդարձների տոնակատարությունները, որոնք մեծ հանդիսավորությամբ ամեն տարի նշվում են Փարիզի Փլեյելի սրահում: Այս տոնակատարման ավանդույթներն սկսվում են 20-ական թվականներից և շարունակվում մինչև մեր օրերը: Տոնակատարությունների գլխավոր կազմակերպիչ ուժը ՖՄՄ-ն ու ԺԱՖ-ն են: Ներկայումս այդ միջոցառմանը մասնակցում են 14 կազմակերպություններ, որոնք միավորված են Սովետական Հայաստանի տարեդարձի կազմակերպիչ կոմիտեում (տե՛ս «Ֆրանսահայ մշակութային միություն, **30 տարի ի ծառայություն ֆրանսահայ համայնքին»**, Փարիզ, 1980, էջ 48, ինչպես նաև ՀՍՍՀ ՀՀՍՇՊԿԱ, ֆ. 875, ց. 5, գ. 12, թ. 2):

Հանդիսավոր նիստի ժամանակ ելույթներ են ունենում համայնքի առաջադեմ գործիչները, Հայաստանից ժամանած գրողներ, մշակութային գործիչներ, Ֆրանսիայի և այլ երկրների պաշտոնական անձինք: Սովետական Հայաստանին նվիրված այդ տոնակատարությունները մեծ հանդիսավորությամբ նշվում են նաև Փարիզի Ալֆորվիլ, Ժանթիի, Իսի-լը-Մուլինո, Բանյո և այլ արվարձաններում, Լիոն, Դեսին, Վալանս, Մարսել և այլ հայաշատ քաղաքներում:

Սովետական Հայաստանի 40-րդ տարեդարձի տոնակատարման հանձնախմբից ստացված մի նամակում գրված է. «Խաղաղության մեջ մայր հայրենիքի մեր ժողովուրդը հնարավորություն ունեցավ ազատ ասպարեզ տալ իր հանճարին, իր մշակույթին: Մշակույթի աննախընթաց վերելքը ամենամեծ ազդակներեն մին է ժողովուրդներու իրարու հետ ծանոթացման և նախապայման բարեկամության: Մայր հայրենիքը, իր մշակույթի աննախընթաց վերելքով կապեց իրեն Սփյուռքի բազմահազար հայությանը, դառնալով լուսավոր փարոս մը մեր ցիր ու ցան ժողովուրդին»[1]:

ՖՄՄ-ի և ԺԱՖ-ի կողմից 1955 թվականից ի վեր կազմակերպված տուրիստական այցելությունները լայն հնարավորություններ են ընձեռում ֆրանսահային՝ անմիջապես տեսնելու և շփվելու հայրենի իրականության հետ: Հայաստան այցելած սփյուռքահայ հասարակական, մշակութային գործիչները ջերմ խոսքեր են հասցեագրում մայր հայրենիքին, իրենց անմոռանալի հիշողությունները պատմում ֆրանսահայ ընթերցողին: Ֆրանսահայ գրականագետ Ենովք Արմենը իր «Հուշեր Հայաստանեն» հոդվածում գրում է, որ Հայաստանը «... միայն քառասուն տարվան ընթացքին արտակարգ վերածնունդ և ծաղկում մըն է ունեցեր՝ մարդկային գործունեության բոլոր մարզերուն մեջ, այդ անսովոր հառնումին համար պետք են գոյություն ունեցած ըլլան ընկերային և քաղաքական բացառիկ լծակներ, որոնք հնարավոր դարձրին այդ երևույթը, զոր բոլոր ականատեսներ անխտիր, անվերապահորեն և միաբերան «հրաշք» կը կոչեն» («Աշխարհ», 1961, № 63, 15 հուլիսի):

Չնայած իր խայտաբղետությանը, ֆրանսահայ համայնքի մեծամասնությունը կազմում են Սովետական Հայաստանի կողմնակիցները: Սակայն համայնքը միատարր չէ, և առաջադիմական հայրենասիրական ուժերի կողքին գործում է նաև դաշնակցությունը, որը Սովետական Հայաստանի դեմ պայքարող գլխավոր ուժն է: Սովետական Հայաստանի հետ համայնքը կապելու ֆրանսահայ առաջադիմական ուժերի գործունեությունը սերտորեն միացած է հակահայաստանյան հոսանքների դեմ մղվող պայքարին:

Դաշնակցական կուսակցության քաղաքական վարքագծի առանցքը հակասովետիզմն է: Ներկայումս դաշնակցական կուսակցությունը ձգտում է ընդլայնել իր ազդեցության շրջանակները: ՍՍՀՄ-ի, Սովետական Հայաստանի իրականության խեղաթյուրումը, սովետական հասարակարգի դեմ չդադարող հարձակումները դաշնակցական մամուլում, համայնքի ազգային-կրոնական միասնականությունը խախտելու փորձերը դաշնակցականների դեմ պայքարը դարձնում են հայ համայնքների առաջադիմական ուժերի առաջնահերթ խնդիրներից մեկը: ԺԱՖ-ը և ՖՄՄ-ն անհաշտ

[1] ՀՍՍՀ ՀՀՍՇՊԿԱ, ֆ. 709, ց. 3, գ. 269, թ. 6:

վերաբերմունք ունեն դեպի դաշնակցական կուսակցությունը: Այս դիրքորոշումն ունի իր պատմական արմատները: ՖՄՄ-ն ու ԺԱՖ-ը շարունակում են ֆրանսահայ առաջադիմական կազմակերպությունների ավանդույթները, որոնք պարունակում են դաշնակցության դեմ պայքարի փայլուն էջեր: ԺԱՖ-ի օրգանն իր ապրիլյան համարներից մեկում, պատմական հետադարձ հայացք նետելով 1915 թ. դեպքերից մինչև մեր օրերը, գրում է, որ հայ ժողովուրդը, անցնելով եղեռնի արհավիրքներով, հուսալի ապաստան գտավ սովետական պետության եղբայրական ժողովուրդների կողքին ու լծվեց նոր հասարակության կառուցման գործին: Երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ հայ ժողովուրդը, մյուս ժողովուրդների հետ մեկտեղ, մասնակցեց Սովետական Միության պատմական առաքելությանը՝ ֆաշիստական սպառնալիքից մոլորակի ազատագրմանը: Այժմ, որպես ՍՍՀՄ-ի մաս կազմող հանրապետություն, Սովետական Հայաստանն ակտիվորեն պայքարում է հանուն խաղաղության ու ժողովուրդների համագործակցության: Թերթը Հայաստանի անցած պատմավոր այս ուղին ներկայացնում է հակադրվելու համար դաշնակցական տեսակետին: «Նոտր վուան» գրում է. «Ցավալի է, որ հետադիմական... ուժերի մեջ հանդես են գալիս հավասարապես և «հայեր», որոնք դեռևս տխրում են նացիստների պարտության համար և առիթը բաց չեն թողնում իրենց ներդրումը կատարելու մթնոլորտը թունավորող սառը կամ տաք պատերազմների, խաչակրաց արշավանքների հրահրման գործում» («Նոտր վուա», 1961, № 72, ապրիլ, էջ 1): «Նոտր վուան» մերկացնում է Բուենոս Այրեսի «Արմենիա» և Փարիզի «Հայաստան» երիտասարդական դաշնակցական թերթերի՝ Սովետական Հայաստանի ներկա կարգերի դեմ ուղղված այն պնդումը, թե հայ ժողովրդի ազգային անկախությանը սպառնում են մի կողմից՝ սահմանակից Թուրքիան, մյուս կողմից՝ «սովետական իմպերիալիզմը»:

«Աշխարհ» թերթը համայնքի ազգային միասնականության հարցի շուրջն այն ճիշտ տեսակետն է պաշտպանում, որ Ֆրանսիայում գործող հայ հասարակական-քաղաքական ուժերի գերակշռող մասը կանգնած է մայր հայրենիքի կողքին: Ռամկավարները ու հնչակյանները, չնայած իրենց գաղափարաքաղաքական նպատակների տարբերությանը, այնուամենայնիվ «դրական» և ուղղամիտ կեցվածք ունեցած են հայրենիքի պետության հանդեպ» (տե՛ս «Աշխարհ», 1973, 3 փետրվարի): Փաստորեն դաշնակցությունը միակ ուժն է, որը հակազդում է համայնքը Սովետական Հայաստանի շուրջը համախմբելու մյուս կուսակցությունների !, կազմակերպությունների գործունեությանը և ֆրանսահայերի շրջանում չունի դաշնակից հասարակական-քաղաքական որևէ ուժ: «Աշխարհը» դաշնակցությանը մերկացնող մի հոդվածում այսպես է բնութագրում նրա գրաված տեղն ու գործունեության նշանակությունը սփյուռքում. «Համայնավար, Ռամկավար և Հնչակյան, անխախտ և անսակարկ հավատքով այսօր կանգնած է իր Մայր Հայրենիքի կողքին, մինչ «ազգային» Հայ հեղափոխական Դաշնակցությունը իր մեծով ու պզտիկով, իր հին ու նոր սերունդներով, դիրք գրաված է միջազգային հետադիմության կողքին և գարշահոտ թուղթով լեզու կերկարե մեր գոյության փարոսին՝ Սով. Հայաստանի դեմ» (նույն տեղը, 1974, 28 դեկտեմբերի):

Ֆրանսահայ առաջադիմական ուժերը դաշնակցական կուսակցության դեմ պայքարը հետևողականորեն շարունակում են մեր օրերում: «Ապրիլի 24-ը որպես հիշատակության օր» նշելու որոշումը ամերիկյան կոնգրեսում քննարկվելու կապակցությամբ Բոստոնի «Հայրենիք» դաշնակցական թերթի հակասովետական մի հոդվածը մերկացնելով, «Աշխարհը» շեշտում է, որ դաշնակցությունն ունենալով «հակասովետ, հակահայրենիք քարոզչական մաղձ թափելու պարտականությունը, հաշվի չի նստում պատմական փաստերի և իրողությունների հետ և չի ուզում ընդունել այն ճշմարտությունը, որ Հայաստանը հանդիսանում է ՍՍՀՄ-ի բազմազգ պետության մի մասնիկը ու ամերիկյան պետական շահերը երբեք չեն համընկել ու չեն համընկնի Հայաստանի շահերի հետ այն պարզ պատճառով, որ Թուրքիան հանդիսանում է ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկի անդամ պետությունը, ինչպես նաև ԱՄՆ-ի մտերիմ դաշնակիցը» (տես նույն տեղը, 1985, 26 հոկտեմբերի): «Հ. Դաշնակցությունը» ընդարձակ հոդվածով «Աշխարհը» քննում է դաշնակցական կուսակցության անցած ճանապարհը մինչև մեր օրերը՝ վեր հանելով հակասովետական խմբավորումների հետ նրանց կապերի ու համագործակցության, տեռորիստական գործողությունների, եկեղեցին պառակտելու և այլ փաստերը: Շաբաթաթերթը, վկայակոչելով «Ազդակ» թերթի 1982 թ. դեկտեմբերի 5-ի և 1983 թ. մարտի 6-ի համարներում տպագրված դաշնակցական կուսակցության XXII համագումարի նյութերը, շեշտում է, որ կուսակցության ուղեգիծը մնացել է նույնը ու «նույն պատրանքներով է սնվում» (տե՛ս նույն տեղը, 1986, 4 մայիսի): «Աշխարհը» առանձնացնում է դաշնակցական կուսակցության ստրատեգիական ծրագրերի ուղղությունները՝ ցույց տալու համար դրանց անիրագործելիությունը և երևութականությունը: Անդրադառնալով սովետաամերիկյան պատերազմի միջոցով «անկախ



ու ազատ» Հայաստան ստեղծելու դաշնակցականների ծրագրին, «Աշխարհը» այն պարզ միտքն է առաջ քաշում, որ նման զինված բախման ժամանակ կվերանա նաև Հայաստանը և նոր իշխանություն ստեղծելը կդառնա անիմաստ, իսկ եթե անգամ առանձնանա, կվերադառնա 1920 թ. Ալեքսանդրապոլի պայմանագրի վիճակին:

«Աշխարհ» թերթը «Խաղաղությունը՝ դըժբախտության աղբյու՞ր» հարցական վերնագրով ընդգծված առաջնորդող հոդվածում սկզբունքային քննադատության է ենթարկում սպառազինությունների մրցավազքի սանձահարման և միջազգային լարվածության թուլացման դեմ հանդես եկող դաշնակցական մամուլի քաղաքական կարճատեսությունը, որը Ռեյկյավիկում Գորբաչովի և Ռեյգանի հանդիպումից «դժբախտություն» է գուշակում մարդկության համար: Այն ժամանակ, երբ աշխարհի ժողովուրդները մեծ հույսեր են կապում սովետա-ամերիկյան բարձր մակարդակի հանդիպումների հետ, դաշնակցական «քաղաքագետները» շարունակում են «70 տարիներու հակահայկական և հակահայաստանյան լարախաղացությունը» («Աշխարհ» 1986, 11 հոկտեմբերի):

Անդրադառնալով մայր հայրենիք-սփյուռք կապերին, ՀԿԿ XXVIII համագումարը նշեց. «Կարևոր քաղաքական խնդիր է սփյուռքին հասցնել ճշմարտությունը Սովետական Հայաստանի մասին, սովետական ժողովուրդների միասնական ընտանիքում նրա պատմական նվաճումների, նրա իսկական ծաղկման մասին, ճշմարտությունը Սովետական Միության արտաքին քաղաքականության նպատակների, մեր սոցիալիստական հասարակության նվաճումների, կոմունիստական կուսակցության ազգային քաղաքականության մասին, հետևողականորեն մերկացնել դաշնակցության, բոլոր ռեակցիոն ու պահպանողական ուժերի թըշնամական հերյուրանքներն ու բարբաջանքը և վճռական հակահարված տալ դրանց»:

Ֆրանսահայ առաջադիմական կազմակերպությունների ու մամուլի անդուլ պայքարը դաշնակցական կուսակցության պառակտչական քաղաքականության դեմ ֆրանսահայ համայնքը դեպի Սովետական Հայաստանը կողմնորոշելու հայրենասիրական գործունեության անքակտելի մասն է և մեծապես օգնում է ֆրանսահայերին՝ ճիշտ կողմնորոշվելու, իրենց հայացքը դարձնելու դեպի մայր հայրենիքը, կապվելու նրա հետ ամուր թելերով: Սովետական Հայաստանի 50-րդ տարեդարձի կապակցությամբ Սովետական Միության Մինիստրների խորհրդի նախագահին տարեդարձի կազմակերպիչ կոմիտեի հղած ուղերձում, արտահայտելով հայրենասեր ֆրանսահայության Սովետական Հայաստանի իրականության ներշնչած հպարտության զգացումը, ասված է. «Ֆրանսահայերը, կենդանի մնալով XX դարի առաջին գենոցիդից հետո, հպարտ են, որ իրենց մայր հայրենիքը անդուլորեն իր ներդրումն է կատարում խաղաղության գործում: Նրանք հպարտ են, որ ներկայումս այդ խաղաղության շնորհիվ Սովետական Հայաստանի ժողովուրդը հասել է իր երկար պատմության ընթացքում չտեսնված նյութական ու բարոյական բարեկեցության»[1]:

Ֆրանսահայ առաջադիմական կազմակերպությունները արժանանում են Սովետական Հայաստանի ջերմ ուշադրությանն ու աջակցությանը: Ավանդական են դարձել արդեն ՖՄՄ-ի և ԺԱՖ-ի անդամների այցելությունները մայր հայրենիք, որտեղ նրանք հոգևոր սնունդ են ստանում համայնքում իրենց հայապահպանման պայքարը շարունակելու համար: Հայաստանի մամուլում տպագրվում են խրախուսանքի խոսքեր՝ ուղղված այս կազմակերպություններին: 1976 թ. Հայաստան այցելեց ՖՄՄ-ի ու ԺԱՖ-ի միացյալ պատվիրակությունը, որի կազմում էին «Աշխարհ» թերթի խմբագիր, ՖՄՄ-ի դիվանի վարչության փոխնախագահ Ավ. Ալիքսանյանը, դիվանի վարչության փոխնախագահ Ս. Թաթիկյանը, վարչության գլխավոր քարտուղար Գ. Սարյանը, ԺԱՖ-ի վարչության քարտուղար Մ. Փեհլիվանյանը: Այս կապակցությամբ «Հայրենիքի ձայնը» գրում է. «Այս առաջադիմական միությունները, որոնք հանդիսանում են ֆրանսահայ գաղութի ամենահեղինակավոր և ազդեցիկ կազմակերպությունները, ավելի քան երեք տասնամյակ է հայրենասիրական մեծ աշխատանք են կատարում ֆրանսահայության և հատկապես երիտասարդությանը մայր հայրենիքի՝ Սովետական Հայաստանի շուրջը համախմբելու, ֆրանսահայերին, ինչպես նաև տեղի հասարակայնությանը բազմադարյան հայ մշակույթին և հայրենիքի առաջընթացին ծանոթացնելու, հայ և ֆրանսիացի ժողովուրդների բարեկամությունն ամրապնդելու գործում» («Հայրենիքի ձայն», 1976, 12 մայիսի): ԺԱՖ-ի կենտրոնական վարչության անդամ Պերճ Մալաքյանը, «Գարուն» ամսագրում ներկայացնելով ԺԱՖ-ի բազմակողմանի գործունեությունը, կարևոր տեղ հատկացրեց խմբային փոխայցելություններին, «քանի որ դրանք նպաստում են նաև ֆրանսիացիների և հայերի միջև բարեկամական փոխադարձ կապի ամրապնդմանն ու ավելի արդյունավետ պայմաններ ստեղծում մեր աշխատանքի համար: Մեր պատվիրակությունների այցելությունները իրենց հերթին հնարավորություն են տալիս ֆրանսահայ երիտասարդին հականե-հանվանե ճանաչելու իրենց իսկ հայրենիքը և որոշակիացնելու նրա

[1] ՀՍՍՀ ՀՀՍՇՊԿԱ, ֆ. 875, ց. 5, գ. 62, թ. 7:

մասին ունեցած պատկերացումները» («Գարուն», 1971, № 10, էջ 57)։

Հայրենական մամուլը արձագանքում է ֆրանսահայ առաջադիմական կազմակերպությունների ու մամուլի գործունեությանը, հոբելյանների կապակցությամբ քննում ու արժեքավորում նրանց աշխատանքը։ Առաջադիմական «Աշխարհ» թերթի 1000-րդ համարի լույսընծայման առթիվ «Հայրենիքի ձայնը» գրում է. «Եվ արդարև «Աշխարհի» հազար համարները եղան Սովետական Հայաստանի ձեռքբերումներն ու փառքը ավետող հայրենաշունչ ողջույններ։ Հայրենիք այցելած սփյուռքահայ մտավորականների՝ «Աշխարհի» էջերում տպագրված տպավորությունները, մայր երկրից Ֆրանսիա մեկնած հայ արվեստագետների, գրողների, գիտնականների, համերգային շրջագայությունների, ցուցահանդեսների, հրապարակային ելույթների վերաբերյալ տպագրվող լրատվությունները, հոդվածները և այլ նյութեր ֆրանսահայությանը խանդավառում են վերածնված հայրենիքի իրականացումներով, բարձրացնում նրա հայրենասիրական ոգին, ամրապնդում հայրենիք-սփյուռք կապերը» («Հայրենիքի ձայն», 1977, 22 հունիսի)։

Ֆրանսահայ մշակութային միության 30-ամյակի կապակցությամբ «Հայրենիքի ձայնը», արժեքավորելով կազմակերպության վաստակները, նշում է. «Չպետք է մոռանալ, որ այդ հսկայածավալ աշխատանքները միությունը կատարում է միայն ու միայն հասարակական կարգով, նույն միության անդամների օժանդակությամբ, նրանց նյութական միջոցներով, մեծ նվիրումով, միայն ու միայն ելնելով միության հիմնական նպատակներից, այն է՝ ֆրանսահայությանը համախմբել մայր հայրենիքի՝ Սովետական Հայաստանի շուրջը, պայքարել խաղաղության, ժողովուրդների համագործակցության, ֆրանս-սովետական բարեկամության ամրապնդման համար» (նույն տեղը, 1979, 12 դեկտեմբերի)։

1980 թ. նոյեմբերի 24—26-ը Երևանում տեղի ունեցավ սփյուռքահայության ներկայացուցիչների համաժողովը, որի նշանաբանն էր՝ «Պայքար հանուն խաղաղության և առաջադիմության»։ Համաժողովին հրավիրված էին նաև ԺԱՖ-ի գլխավոր քարտուղար Էդմոն Յանըկյանը և «Աշխարհ» թերթի խմբագիր Ավետիս Ալիքսանյանը։ Ելույթ ունենալով համաժողովում և կարևորելով խաղաղության նշանակությունը, Ալիքսանյանն ասաց. «Առանց խաղաղության չկա առաջադիմություն։ Խաղաղության տված ապահովությամբ է երաշխավորված մեր սիրելի հայրենիքի հետագա վերելքը, անխափան վերելքը։ Իսկ այս խաղաղությունը մեզի պարգևած է Խորհրդային Միությունը։ Ուրեմն, մենք, տարբեր երկրներէ Երևանի մեջ հավաքված սփյուռքահայ ներկայացուցիչներս, պետք է միշտ կանգնինք խաղաղասեր և հառաջադիմական ուժերու կողքին» («Վերածնված հայրենիքը և սփյուռքը», Երևան, 1982, էջ 165—166)։

Ֆրանսահայ հայրենասիրական-առաջադիմական ուժերի ազգանվեր ու խաղաղասեր գործունեությունը բարձր գնահատականի է արժանանում Ֆրանսիայի մշակութային, հասարակական ու քաղաքական ականառու գործիչների կողմից։ Սովետական Հայաստանի 56-րդ տարեդարձի կազմակերպիչ կոմիտեի սովետական կառավարությանը հղած բանաձևում, որը ստորագրված է հանդիսավոր նիստի նախագահ, Փարիզի դեպուտատ Լուի Բայոյի կողմից, ասված է. «Իրենց հայրենիքը սիրող ու նրան նվիրված ֆրանսահայերը ցանկանում են ու Ֆրանսիայի ժողովրդի հետ միասին գործադրում են ջանքեր մարդկության բարձրագույն իդեալի՝ խաղաղության ամրապնդման ու ամբողջ մոլորակի վրա նրա հաստատման համար... ֆրանսահայերը պատշաճ են մատուցում սովետական մարդկանց ներկայումս աշխարհում կատարվող պատմական իրադարձություններին իրենց վճռական ներդրման համար։ Նրանք հատկապես ուրախ են գիտակցելու, որ հայ ժողովուրդը այդ գործում կատարում է իր լիարժեք ներդրումը»[1]։ Հայկական ՍՍՀ 60-րդ տարեդարձի նշման շեֆական կոմիտեի (որտեղ ընդգրկված էին բազմաթիվ ականավոր անձնավորություններ, այդ թվում՝ եվրոպական ասամբլեայի դեպուտատ Լուի Բայոն, խոշոր ձեռնարկատեր Նապոլեոն Բյուլուկյանը, հանրահայտ նկարիչ Ժան Գառզուն, Ֆրանսիայի դեսպան Մորիս Դեժանը, ՖԿԿ-ի անդամ, ազգային ասամբլեայի դեպուտատ Գի Դյուկոլոնեն, Գոնկուրի ակադեմիայի անդամ Արման Լանուն, հայագետ Ժան-Պիեռ Մահեն, աշխարհահռչակ գրող Վիլյամ Սարոյանը և ուրիշներ) սովետական կառավարությանը հղած ուղերձում, որը ստորագրել է Ֆրանսիայի կոմկուսի քաղբյուրոյի անդամ, «Յումանիտե» թերթի քաղաքական դիրեկտոր, «Ֆրանսիա—ՍՍՀՄ» ընկերության պրեզիդենտական խորհրդի անդամ և Սովետական Հայաստանի 60-րդ տարեդարձի հանդիսավոր նիստի նախագահ Ռոլան Լըրուան, ասված է. «Ֆրանսիայում ապրող հայերը խոր ուրախությամբ չափում են այն ահռելի ուղին, որը անցել են իրենց եղբայրները Հայաստանում Սովետական Միության եղբայրական ժողովուրդների ընտանիքի գրկում։

[1] ՀՍՍՀ ՀՀԾՍՊԿԱ, ֆ. 875, ց. 8, գ. 9, թ. 3—4։



Ազգային վերածննդի այս 60-րդ տարեդարձին Ֆրանսիայի հայերը համոզված են, որ իրենց հայրենիք Ֆրանսիայի շահերը և Հայաստանի շահերը սերտորեն կապված են Սովետական Միության հետ առևտրական փոխանակության, համագործակցության և բարեկամության զարգացմանը։

Միայն այս պայմաններում կարող է ամրապնդվել խաղաղությունը ի բարօրություն բոլոր մարդկանց։

Հենց այս առումով ֆրանս-հայկական բարեկամությունը՝ ֆրանս-սովետական բարեկամության անբաժան մի մասը, գտնում է և կգտնի իր կենսունակության լավագույն իմաստը»[1]։

1986 թ. փետրվարին պատասխանելով Ռ. Լըրուայի և «Յումանիտեի» մյուս պատասխանատու աշխատողների հարցերին, Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը սովետա-ֆրանսիական հարաբերությունների մասին ասաց. «Սովետական Միությունը հանդես է գալիս Ֆրանսիայի հետ լայն համագործակցության, սովետական և ֆրանսիական ժողովուրդների բարեկամության օգտին։ ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի միջև եղած տարբերությունները բնավ էլ խոչընդոտ չեն նրանց համաձայնության և համագործակցության համար։ Սա մեր հաստատակամ, տևական, սկզբունքային դիրքորոշումն է։ ՍՍՀՄ-ի և Ֆրանսիայի փոխըմբռնման բարելավումը և համագործակցության կարգավորումը մենք կարևոր ենք համարում մեր երկրների արմատական շահերի՝ Եվրոպայի և ամբողջ աշխարհի խաղաղության ամրապնդման, միջազգային իրադրության առողջացման համար» («Սովետական Հայաստան», 1986, 8 փետրվարի)։

Ֆրանսահայ առաջադիմական կազմակերպությունների մշակութային, հասարակական ու քաղաքական գործունեությունն ընթանում է համաքայլ Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության ղեկավարած պայքարի հետ՝ հանուն խաղաղության և դեմոկրատիայի։

Ֆրանսահայ առաջադիմական կազմակերպությունների գործունեությունը արժանանում է ինչպես Սովետական Հայաստանի, այնպես էլ սովետական կառավարության հավանությանն ու խրախուսանքին։ Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության 1974 թ. նոյեմբերի 28-ի հրամանագրով՝ Ֆրանսիայի և Հայկական ՍՍՀ-ի միջև մշակութային կապերի զարգացման ու ֆրանս-սովետական բարեկամության ամրապնդման համար ՖՄՄ-ն պարգևատրված է պատվոգրով։ 1980 թ. Փարիզի սովետական դեսպանատանը «Աշխարհ» թերթի խմբագիր, ֆրանսահայ մշակութային միության փոխնախագահ Ավետիս Ալիքսանյանին ՍՍՀՄ Գերագույն սովետի հրամանագրով հանձնվել է Ժողովուրդների բարեկամության շքանշան՝ Սովետական Միության և Ֆրանսիայի միջև բարեկամական կապերին սատարող գործունեության համար։ Պարգևատրման արարողությանը ներկա են եղել աշխարհահռչակ գրող Վիլյամ Սարոյանը, հանրահայտ նկարիչ Ժ. Գառզուն, բանաստեղծ Ռ. Ռոժդեստվենսկին, «Ֆրանսիա—ՍՍՀՄ» ընկերության նախագահության անդամ Ռայմոն Մարկիեն, ֆրանսահայ կազմակերպությունների, ԺԱՖ-ի ու նախկին ռազմիկների միության ներկայացուցիչներ։ 1982 թ. նույն շքանշանով է պարգևատրվում ՖՄՄ-ի առաջատար գործիչ Աղասի Դարբինյանը՝ հօգուտ ժողովուրդների բարեկամության կատարած աշխատանքի։

Այս փաստերը մեկ անգամ ևս հաստատում են ֆրանսահայ առաջադիմական կազմակերպությունների բեղմնավոր գործունեությունը։ Նրանք, ուղեցույց ընտրելով մշակութային կապերի զարգացման, ժողովուրդների բարեկամության և խաղաղության պահպանման գաղափարները և հավատարիմ ծառայելով դրանց, շարունակում են իրենց հայրենանվեր գործունեությունը։

[1] ՀՍՍՀ ՊՊԿԱ, ֆ. 420, ց. 26, գ. 4, թ. 13—14։

# ՀԱՅԱՍՏԱՆ ԵՎ ՌՈՒՍԱՍՏԱՆ. ԵՐԿՈՒ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՄԵՐՁԵՑՄԱՆ ԵՎ ՄԻԱՎՈՐՄԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ԱՐՄԱՏՆԵՐԸ

**Վ. ԲՈՒԳԱՆՈՎ**

Վերակառուցման, դեմոկրատացման, հրապարակայնության ժամանակաշրջանն ու դրա առաջացրած հասարակական-քաղաքական, հոգևոր վերելքը շոշափեցին Սովետական Միության ժողովուրդների կյանքի բոլոր ոլորտները: Բնականաբար, մի կողմ չմնացին նաև գիտապատմական հետազոտությունները. վերջին ժամանակներս լույս են տեսել ոչ քիչ թվով հետաքրքիր աշխատություններ, հայրենական պատմության զանազան պրոբլեմների վերաբերյալ աղբյուրների հրապարակումներ, վերաիմաստավորվում, վերանայվում են որոշ հարցեր, վերացվում են «սպիտակ բծերը», «արգելված գոտիները» և այլն:

Փոփոխությունների կենարար շունչը նոր, շատ բան է մտցնում պատմական գիտության մեջ, որը, հենվելով կուտակված նվաճումների, փորձի վրա, մի կողմից, շարունակում է նախորդ փուլերի ավանդույթները, մյուս կողմից՝ օգտագործում է հետազոտության նոր հնարավորություններ, նոր եղանակներ: Հանրահայտ է, թե որքան մեծ դեր է խաղում անցյալի իմացությունը արդի ժամանակը հասկանալու և ապագան կանխագուշակելու համար: Այս առումով գիտապատմական շատ թեմաների թվում էապես կարևորվում է մեր երկրի ժողովուրդների մերձեցման պրոբլեմը՝ նրանց պատմական զարգացման ընթացքում, նրանց բարեկամության և փոխօգնության արմատների պրոբլեմը:

Մեր երկրի ժողովուրդների փոխհարաբերությունների խնդիրը, ոչ ռուս ժողովուրդների կամավոր միանալը Ռուսաստանին վաղուց գրավել են իրենց արժանի տեղը սովետական պատմագիտության մեջ: Ստեղծվել է հետազոտությունների, աղբյուրների հրապարակումների մի ամբողջ գրադարան բազմապիսի հարցերի վերաբերյալ:

Ընդարձակ գրականություն գոյություն ունի հայ-ռուսական կապերի մասին, Հայաստանի ճակատագրում ռուս ժողովրդի դերի, Ռուսաստանի կազմի մեջ նրա մտնելու մասին: Դրանցից են Ստեփանոս Շահումյանի և Աբրահամ Երևանցու, Մ. Չամչյանի և Կ. Եզյանի, XVIII դարի և XX դարի սկզբի ուրիշ պատմաբանների ու քաղաքական գործիչների աշխատությունները, սովետական շրջանում ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիաների ակադեմիկոսներ Հ. Մանանդյանի և Հ. Օրբելու, Ա. Գ. Հովհաննիսյանի և Ա. Ռ. Հովհաննիսյանի, Գ. Գալոյանի և Ծ. Աղայանի, Ս. Երեմյանի ու Լ. Խաչիկյանի, Բ. Գրեկովի, Մ. Տիխոմիրովի, Վ. Բարթոլդի և այլոց հետազոտությունները:

Պատմական գիտությունների դոկտոր Ռ. Խաչատրյանն իր հետազոտության* թեմա է ընտրել մի կարևոր և քիչ ուսումնասիրված պրոբլեմ՝ ռուսական պատմագիտական մտքի ու գիտության մեջ Հայաստանի, հայ ժողովրդի մասին, հայ-ռուսական կապերի զարգացման ու երկու ժողովուրդների մերձեցման, հայ ազատագրական շարժման ռուսական կողմնորոշման ամրապնդման գործում նրանց կատարած դերի մասին գիտելիքների կուտակումը: Այդ կողմնորոշումը հանգեցրեց այն բանին, որ Արևելյան Հայաստանը 1828 թվականին մտավ Ռուսաստանի կազմի մեջ: Իր գիտական խնդրի դրվածքին ու լուծմանը հեղինակը մոտենում է մեծ ընդգրկումով և լայնորեն. նա վերլուծում է թեմայի վերաբերյալ XII—XIX դարերի սկզբի աղբյուրների պարունակած նյութը: Ըստ էության, գրքում խոսքը ոչ միայն պատմագիտական, այլև ավելի լայն, հասարակական-քաղաքական մտքի մասին է. հետազոտողի տեսադաշտում են գտնըվում, տարեգիրներից ու ժամանակագիրներից. պատմաբաններից և այլ գիտնականներից բացի, նաև ճանապարհորդների նկարագրությունները, զանազան ավանդապատումներ, պետական ակտեր, այբբենարաններ ու բառարաններ, այլ աղբյուրներ:

Գիրքը կառուցված է ժամանակագրական և թեմատիկ սկզբունքներով: Նրա երեք գլուխներից առաջինում հեղինակը քննության է առնում մինչև XVII դարը ներառյալ ռուսական տարեգրությունների և այլ աղբյուրների պարունակած նյութը Հայաստանի մասին, երկրորդ գլխում՝ XVIII դարի և XIX դարի առաջին քառորդի գիտնականների, վերջապես, երրորդ գլխում նույն աղբյուրներն ու հեղինակները քննության են առնված սինթետիկ պլանով՝ հայ-ռուսական մերձեցումը ռուսական պատմագիտական մտքի տեսակետից:

Ներածության մեջ Ռ. Խաչատրյանը համոզիչ ու յուրօրինակ հիմնավորում է իր ընդհանուր մոտեցումը առաջադրված պրոբլեմի ուսումնասիրմանը, պրոբլեմ, որն առաջին անգամ է ուսումնասիրվում այդպիսի ծավալով և այդպիսի հարուստ, կոնկրետ պատմագրական, հասարակական-քաղաքական, մեթոդոլոգիական հագեցմամբ: Հենց այդտեղ էլ համառոտ ու հստակ անցկացված են պատմագրական և աղբյուրագիտական բնույթի հիմնական գծերը:

Հարգանք է հարուցում կատարված աշխատանքի վիթխարի ծավալը. տարեգրություններից և հին շրջանի ուրիշ հուշարձաններից, նոր ժամանակի գիտական աշխատություններից բացի՝ հեղինակն ուսումնասիրել է 50-ից ավելի հանդես և պարբերական այլ հրատարակություն, այդ թվում՝ Ն. Նովիկովի «Древняя вивлиофика», Ֆ. Տումանսկու «Российский магазин», Ն. Կարամզինի «Московский журнал» և «Вестник Европы», մի շարք այլ նյութեր, որոնք առաջին անգամ են քննության առնվել ուսումնասիրվող պրոբլեմի տեսանկյունից, այդ թվում՝ Վ. Տատիշչևի արխիվը: Ընդհանրապես, գրքի ընթերցումը ավելի ու ավելի է համոզում, որ նրա հեղինակը առաջինն է ձեռնամուխ եղել մի շարք հարցերի: Դա վերաբերում է, ի դեպ, մինչև այժմ չպահպանված աղբյուրների քիչ հայտնի մի շարք հրապարակումների:

Կիևյան Ռուսիայի դարաշրջանի տարեգրության մեջ և պատմագիտական մտքի այլ հուշարձաններ, ինչպես հեղինակն է ցույց տալիս, ոչ քիչ տեղեկություններ են պարունակում Հայաստանի ու հայերի մասին, որոնց բնակավայրերը Ռուսիայում երևան են գալիս «դեռ մինչև թաթարական արշավանքը» (էջ 38. ավելի լավ է ասել՝ «մոնղոլա-թաթարական արշավանքը»): Հայաստանի մասին ռուսական աղբյուրների պարունակած տվյալների վերլուծության հետ կապված թեման այս կամ այն կերպ շոշափվել է հայրենական գիտնականների աշխատություններում. հեղինակը հիշատակում է դրանք՝ ուշադրությունը ճիշտ բևեռելով այն բանի վրա, որ դրանք «հետևողականորեն ու համակարգված քննության չեն առնվել Հայաստանի մասին պարունակած նյութերի տեսակետից»: Հենց այդ բանն էլ արել է հեղինակը, ընդ որում մի վերապահումով. Հայաստանի մասին այդ նյութերը ռուսական տարեգրության մեջ (և, ըստ երևույթին, ուրիշ, ոչ տարեգրական աղբյուրներում) վերցված են, գլխավորապես, այն ծավալներով, որոնցով դրանք հետագայում մտել են ռուսական պատմագիտության մեջ: Այստեղ ևս Ռ. Խաչատրյանը, ըստ էության առաջին անգամ, դնում է սկզբունքային տեսական «հարց ռուսական պատմական գիտության մեջ Հայաստանի մասին **գիտելիքների հաջորդայնության** վերաբերյալ» (էջ 44):

Առաջին գլխում տրվում են XII—XVII դդ. ռուսական տարեգրություններում և ժամանակագիրների մոտ Հայաստանի մասին եղած տվյալների հավաքումն ու վերլուծությունը (էջ 45—57, 59—63): Հեղինակը ուշադիր հետևում է տերմինաբանությանը, դրա փոփոխություններին, տարբեր տարեգրություններում, դրանց խմբագրություններում, ցուցակներում «Արմենիա» «արմեններ» անվանումների տարընթերցվածքներին: Հատկապես հետաքրքրական են տարեգրական հիշատակումները Ռուսիայի և այլ երկրների հայերի մասին:

Շատ գունագեղ է «ուղևորությունների»՝ այն ճանապարհորդությունների նկարագրությունների նյութը, որ դեպի Պարսկաստան, Պաղեստին կատարել են XVII դարում ռուս մարդիկ՝ Ֆեդոտ Կոտովը, Վասիլի Գագարան, Արսենի Սուխանովը (էջ 63—80): Դրանց մեջ հետաքրքիր տեղեկություններ կան հայերի ծանր դրության մասին թուրք-պարսկական պատերազմների կապակցությամբ, որոնք ավերել էին նրանց հողերը, հայ եկեղեցու մասին և այլն:

Ընդհանուր առմամբ քննության առնված աղբյուրները մեծ քանակի կարևոր տվյալներ են պարունակում Հայաստանի պատմության, նրա եկեղեցու, հայերի դրության, ռուս-հայ քաղաքացիական և եկեղեցական կապերի մասին, ազգային-ազատագրական և սոցիալական շարժումների, հայոց լեզվի ու այբուբենի մասին: XVIII դարի ռուսական պատմագիտությունը նախորդ դարերից ստացել էր «Հայաստանի վերաբերյալ որոշակի ժառանգություն», որն օգտագործվել է ռուս պատմաբանների աշխատություններում (էջ 80—81):

XVIII դարը, ինչպես ցույց է տալիս հեղինակը երկրորդ գլխում (էջ 82—86 և հաջ.), նոր, շատ բան է մտցրել հայ-ռուսական կապերի զարգացման մեջ: Հայ ժողովրդի մեծ մասի ռուսական կողմնորոշումը, որ առաջացել ու ամրապնդվել էր նախորդ երկու հարյուրամյակներում, այժմ ձեռք էր բերել

* **Р. Г. Хачатрян.** Русская историческая мысль и Армения (XVII-начало XIX вв.. Ереван, издательство АН Арм. ССР, 1987, 362 стр.

ԲՈՒԳԱՆՈՎ ՎԻԿՏՈՐ ԻՎԱՆՈՎԻՉ— պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր:

# ՀԱՎԵՐԺԱԿԱՆ ՓՈԹՈՐԿԻ ՏԱՐԵՐՔՈՒՄ

«Պոետը ոգու ամենաազնիվ անոթն է», ասել է Վ. Գ. Բելինսկին: Ժամանակների հոլովույթում ո՞րերորդ անգամ, և էլի՛ ու էլի՛ համոզվում ես դրա մեջ: Ամեն իսկական պոետ համոզում է այդ բանում իր պոետական աշխարհո՛վ, կյանքի ու ստեղծագործության համահնչունությա՛մբ, խոսքի ու գործի միասնականությա՛մբ: Ամեն իսկական պոետ գալիս է նորոգելու «ոգու ամենաազնիվ անոթի» թանկ ու շա՜տ պարտավորեցնող բնութագիրը:

Ահա և ընթերցողի սեղանին է բացառիկ, մեծարժեք մի ժողովածու՝ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի չափածո երկերը՝ մեկտեղված մի գրքի մեջ, առաջին անգամ հայերեն թարգմանությամբ*: Տեղին է նկատում ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Էդվարդ Ջրբաշյանը գրքի մուտքը պսակող իր առաջաբանում. «Հայ ընթերցողի ուշադրությանը հանձնվող այս գիրքը իր բովանդակությամբ շատերի համար կարող է անակնկալ լինել: Իրոք, զարմանալի չէ՞. գիտական կոմունիզմի մեծ հիմնադիրներ Կարլ Մարքսն ու Ֆրիդրիխ Էնգելսը այստեղ հանդես են գալիս իբրև... բանաստեղծներ: Բայց այդ անակնկալը միանգամայն իրական կենսագրական փաստ է»: Եվ ահա, միանգամայն իրական այդ փաստի առթած ձգողականությամբ էլ հակվում ես գրքի էջերին.

**... Ի՜նչ բարձր է երկինքը կապուտակ,**
**Հոսանքն ինձ առաջ է տանում,**
**Իմ ճամփին կա մի վեհ նպատակ,**
**Կրծքիս տակ՝ աշխարհ մի անհուն:**

Այս չորս տողը, որ Մարքսի «Նավաստու երգը ծովում» բանաստեղծության վերջին քառյակն է, յուրատեսակ բանալի կարող է դառնալ ընթերցողի համար: Հետզհետե, գրքի ընթերցմանը զուգահեռ, համոզվում ես թե՛ հիրավի վեհ նպատակի և թե պոետի կրծքի տակ տրոփող անհուն աշխարհի գոյության մեջ: Ի դեպ, ինչ որ այս դեպքում բնական է, և արժե՛ր սպասել՝ այն էլ երիտասարդ Մարքսից, ինքն իրեն մարտիկ համարելու այդ թեման հաճախ է ի հայտ գալիս նրա պեոզիայում գեղարվեստական տարբեր կերպավորումներով, տարբեր բանաստեղծությունների մեջ: Ահա «Զգացմունքներ» բանաստեղծության 3-րդ քառատողը.

**Ինձ կանչում են հավերժական**
**Փոթորիկները կյանքում,**
**Ես չգիտեմ ոչ մի սահման**
**Կյանքի խելառ հորձանքում:**

Կամ՝ «Հողմ» բանաստեղծության 3-րդ տունը.

**Երակներում իմ ջահել**
**Արյան եռք է ուժգին,**
**Եվ կուզեի ես ձուլվել**
**Հողմի անզուսպ ուժին:**

Մարքսը բանաստեղծական արվեստով տարվել և ինքն էլ գրելու փորձեր է արել 15—19 տարեկանում (1833—1837), Բեռլինի համալսարանում ուսանելու տարիներին: Էնգելսի գրափորձերը (մանկական տարիները ներառյալ) տևում են մինչև 1842 թվականը: Թե՛ Մարքսը և թե Էնգելսը հետամուտ չեն եղել տպագրվելու՝ համեստորեն թերագնահատելով իրենց գրական արտադրանքը: Այդ շրջանում լույս են տեսել Մարքսից երկու բանաստեղծություն միայն, իսկ Էնգելսից՝ մոտ տասը: Մինչդեռ թե՛ Մարքսի, թե՛ Էնգելսի թողած գրական ժառանգությունը պատկառելի է բառիս բուն իմաստով և, ամենայն իրավամբ, արժանի գնահատանքի: Տարիներ անց, արդեն նրանց մահից հետո, մարքսիզմի դասականների գրական ստեղծագործությունները պատշաճ ուշադրություն հրավիրեցին իրենց վրա, տպագրվեցին, տեղ գտան նրանց հատորներում:

Կարլ Մարքսի բանաստեղծությունները ժանրային տարբեր ընդգրկումներ ունեն, խոհափիլիսոփայական լիրիկա, էպիգրամ, բալլադ, սոնետ: Ստեղծագործորեն սնվելով գերմանական դասական պոեզիայի ակունքներից՝ Գյոթե, Շիլլեր, Հայնե, Մարքս բանաստեղծը (անվարան ու անվերապահորեն կարելի է նրան այդպես կոչել) բերում է բանաստեղծական ուրույն մի աշխարհ՝ գեղարվեստական ու պատկերային իր համակարգով, մտածելակերպով, թեմաների բազմազանությամբ, հեղինակի վերաբերմունքով ու քաղաքացիական հավատամքով: Առողջ, տաք, կենսաթրթիռ մարդկայնության մի ալիք է թևածում նրա բանաստեղծական աշխարհում: Թեմաներն իսկ՝ հայր, քույր, սիրած աղջիկ, կույր կնոջ թեման և ուրիշներ, վկայում են, որ բանաստեղծ Մարքսի քնարի ամենազորեղ լարը կյանքի հանդեպ խորն ու անսահման սերն է:

**... Ես կյանքը լքե՜լ չեմ կարող անգամ.**
**Մենք իրար մեջ ենք, իրար մտերիմ,**
**Եվ չունեմ հիմա ես ուրիշ պատգամ,**

* Կարլ Մարքս, Ֆրիդրիխ Էնգելս, Չափածո երկեր, Երևան, «Հայաստան» հրատ. 1987, 453 էջ:



**Քան երգել սերը. դա օրենքն է իմ:**

Աշխարհին է հայտնի Կարլ Մարքսի և նրա ապագա կնոջ՝ Ժեննի ֆոն Վեստֆալենի սիրո պատմությունը: Հանգամանքների աննպաստ բերումով հեռու լինելով նրանից՝ Մարքսը իր սիրած էակին է ձոնել բազմաթիվ բանաստեղծություններ:

**Մի բա՛ն էլ ասեմ քեզ պիտի արդեն.**
**Զնգում է ուրախ իմ երգը վերջին,**
**Խփում է վերջին ալիքն արծաթե,**
**Որ արժանանամ, Ժեննի, քո շնչին,**

գրում է նա «Ամփոփիչ» սոնետ Ժեննիին» ստեղծագործության մեջ: Ինչպես կյանքում ու պայքարում իր լուսավոր գաղափարներին, այնպես էլ սիրո մեջ վստահ Մարքսը հավատում էր իր նվիրական երազանքի իրականացմանը:

**Ես կհեռացնեմ ցավը քո դեմքից,**
**Եվ ծառը կենաց կհառնի մի օր,**

լավատեսական այս տողերով է ավարտվում հիշյալ սոնետը: Ինչ որ բնական է տեղի ու ժամանակի համար, ռոմանտիկական ակընհայտ շնչավորում ունեն Մարքսի բանաստեղծությունները՝ թե՛ սիրային և թե նրանք, որ կյանքի լավի ու վատի, ժամանակի ծանր ու անարդար բարքերի մասին են խոսում, ինչպես նաև «Ուլանեմ» չափածո ողբերգությունը:

**Քանի որ մեջքիս անողոք աստված**
**Դրեց ահավոր հոգս ու ծանրություն,—**
**Չքացան նրա աշխարհներն անդարձ**
**Լոկ մի բան մնաց՝ վրեժխնդրություն:**
**Պատժել եմ ուզում և՛ ինձ, և՛ նրան,**
**Երկնքի վսեմ, մեծ տիրակալին,**
**Թեև անզոր եմ ու անօգնական,**
**Եվ անհատույց է մնում իմ բարին:**

Երիտասարդ Մարքսի բանաստեղծական աշխարհում գունագեղություն են ստեղծում հումորը, ծաղրը, սարկազմը, որոնց օգնությամբ նա համարձակորեն ձաղկել է իր ժամանակաշրջանի հոռի բարքերը: Ահա բնորոշ մի էպիգրամ.

**Իր հարմարավետ բազկաթոռներին**
**Գերմանական բութ հասարակությունն է**
**նստել լռին:**
**Մրրիկն ավելի թունդ է մոլեգնում,**
**Երկինքն ավելի մռայլ է հագնում,**
**Լափում են իրար կայծակները շեկ,**
**Եվ նրան ոչինչ չի հուզում երբեք:**

Վեհ նպատակ, պայքարելու կամք և կյանքում ինչ-որ բան անպայմանորեն դեպի լավը փոխելու հավատ ունեցող Մարքսը, որ նույնանում է իր բանաստեղծությունների հերոսի հետ, ընթերցողին էլ տոգորում է իր ավյունով:

Առանձին խոսակցության է արժանի Կարլ Մարքսի հավաքած ու մշակած ժողովրդական երգերի հավաքածուն՝ երգեր ալբանական և կուրլանդական բանահյուսության մոտիվներով, ժողովրդական երգեր-աֆորիզմներ, իտալական երգեր, ֆիննական ռոմանսներ: Ծանոթանալով դրանց և ըմբոշխնելով ժողովրդական ստեղծագործության գողտրիկ նմուշների պատճառած գեղագիտական բավականությունը՝ գալիս ես եզրակացության, որ եթե գիտական կոմունիզմը շահել է՝ գտնելով իր հիմնադրին ու տեսաբանին, ապա գրականությունն ու բանահյուսությունը կորցրել են նրան: Ահա մի սքանչելի նմուշ Մարքսի հավաքածուից.

**Ես տեսա մի քնքուշ ծաղիկ,**
**Ծաղիկ կարմիր և սպիտակ,**
**Ես չեմ տեսել նմանը դեռ,**
**Սրտիս իջավ մի խոր թախծանք:**
**Օ՜, իմ ծաղի՛կ, օ՜, իմ ծաղի՛կ,**
**Թերթիկներդ ոսկեշաղիկ:**

Շվեյցարական ժողովրդական «Ծաղիկ» երգի առաջին քառյակն է սա:

Ֆրիդրիխ Էնգելսի երիտասարդական տարիների գրափորձերը նույնպես ռոմանտիկական երանգավորում ունեն: Էնգելս բանաստեղծը ստեղծագործական իր նկարագրով ավելի շուտ քաղաքացիական պոեզիայի երգիչ է՝ հրապարակախոսական լիցքով ու սուր գրչով օժտված:

**Չի՛ վախեցնի ինձ ոչ մի շան վայրահաչ,**
**Ես տեսնում եմ ազատության օրն անվիշտ,**
**Մի՛ մոլորվեք, զի լուսայգից քիչ առաջ**
**Մեգն ավելի անթափանց է լինում միշտ:**

Գրքում տեղ է գտել նաև Էնգելսի գրական ժառանգության մեծածավալ ստեղծագործությունը՝ «Աստվածաշնչի հրաշալի փրկությունը հանդուգն մահափորձից կամ հավատի հաղթանակը» (քրիստոնեական հերոսապատում) պոեմ-պարոդիան: Այս գործի ստեղծման համար հիմք է դարձել ձախ հեգելական Բրունո Բաուերին Բոննի համալսարանից հեռացնելու հանգամանքը: Ի դեպ, պոեմն ստեղծվել է Էնգելսի, նաև հիշյալ Բրունո Բաուերի եղբոր՝ Էդգար Բաուերի համագործակցությամբ:

**Ամո՜թ քեզ, Բո՛նն, ամո՛թ, պատվա՜րդ կրոնի,**
**Մոխիրը քո գլխի՜ն, կուրծքդ ծեծի՛ր հիմի...**

Սուր, ձաղկող լեզուն, XVIII—XIX դարերի քաղաքական, գրական ու փիլիսոփայական ասպարեզների ակնառու դեմքերի ներկայությունը, ժամանակի իրադարձությունների պատկերաշարը պոեմում այն դարձնում են պատմագրական ուրույն արժեք ունեցող հետաքրքիր երկ: Հին Հռոմի պատմությունից մի դրվագ է ընդգրկում Էնգելսի «Կոլա դի Ռիենցի» չափածո դրաման: Գրքում տպագրված են ֆրագմենտներ «Անխոցելի Զիգֆրիդը» տրագիկոմեդիայից, ուր Զիգֆրիդի կերպարը հեղինակի նվիրական գաղափարների արտահայտիչն է դառնում:

**Ինչու՞ կորցնեմ էլ ժամանակ՝**
**Ձանձրանալով ճոխ պալատում:**
**Հիմա գնամ հեծնեմ արագ.**
**Խրխնջում է իմ ձին հանդում:**
**Ինձ մոտ իջիր աշտարակից,**
**Իմ հինավուրց սուր անվեհեր:**
**Թեժ պայքարը կանչու՞մ է ինձ,**
**Հա՛յր իմ, ցնոր հանդիպումներ:**

Գեղարվեստական որոշակի արժեք են ներկայացնում Էնգելսի «Հուլիսյան օրերը Գերմանիայում», «Էթոկլեսի և Պոլինիկեսի մենամարտը», «Պապիկին», «Քույրիկիս երգը» և ուրիշ բանաստեղծությունները:

Անվերնագիր՝ «Կարծես թե իմ բոլոր մըտքերն են սպառված» տողով սկսվող բանաստեղծությունը ավարտվում է հետևյալ խորհրդանշական մտքով.

**Բայց օդը քիչ է իմ շնչառության համար:**

«Հուլիսյան օրերը Գերմանիայում, 1839 թիվ» խորագիրը կրող բանաստեղծության մեջ, դիմելով արքա Էռնստ-Ավգուստին, Էնգելսն ասում է.

**... Ո՞վ Էռնստ-Ավգուստ, զայրացկոտ դեմքով**
**առաջին**
**հերթին ես քե՛զ եմ դիմում.**
**Դու՛, նենգ բռնակա՛լ, օրենքն ես խախտել,**
**բայց հիմա անսա՛ փոթորկի ձայնին,**
**Տե՛ս ժողովուրդը ինչպես է հուզվում, և սուրը**
**ինչպես չի ուզում պատյանն իր**
**վերադառնալ:**
**Նույնքա՞ն ամուր է քո գահը ոսկյա, որքան**
**նավն**
**իմ այս, որին քշում է փոթորիկն անսանձ:**

Եթե որևէ ընդհանուր բան կա Մարքսի և Էնգելսի բանաստեղծություններում, ապա ազատաբաղձ նույն ոգին է, լավի, ճշմարտության, արդարության համար մղվող պայքարի նույն ծարավը:

Բանաստեղծելու անուրանալի տաղանդով օժտված՝ թե՛ Մարքսը և թե Էնգելսը թողեցին իրենց գրական կողմնորոշումը, բոլորանվեր տրվելու համար ի շահ մարդկության բարօրության՝ կյանքի առաջադրած խնդիրներին: Անկասկած, այդ բանում դեր ունեցավ և մարդկային թանկ առաքինություններից մեկի՝ համեստության, դրանից էլ բխող խստապահանջության այն բարձր չափանիշը, որով նրանք դատում էին սեփական ստեղծագործությունը:

Այս մասին վկայող գրավոր աղբյուրներ էլ կան...

Հայ ընթերցողը, որ շատ վաղուց է ծանոթ ու լավատեղյակ Կարլ Մարքսի և Ֆ. Էնգելսի տեսական մեծանշանակ գրավոր ժառանգությանը, այսօր հնարավորություն է ստանում հաղորդակցվելու նրանց... գեղարվեստական, այն էլ չափածո երկերին: Գերմաներենից արված տողացիների հիման վրա թարգմանությունը կատարել է վաստակած բանաստեղծ-թարգմանիչ Արտաշես Պողոսյանը: «... Մեծ ու երկարատև աշխատանքի շնորհիվ Արտ. Պողոսյանը հաջողությամբ է իրականացրել այդ դժվարին խնդիրը: Նրա թարգմանությունը կատարված է սիրով, բանիմացությամբ և բարձր ճաշակով: Այն հաջողությամբ վերարտադրում է Մարքսի և Էնգելսի գրական ստեղծագործության բովանդակության և գեղարվեստական առանձնահատկությունների համակարգը»,— գրքի առաջաբանում գրում է ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Էդվարդ Ջրբաշյանը:

Գեղարվեստական ստեղծագործությունն այն քուրան է, ուր թրծվում և կյանքի ու պայքարի մկրտություն են ստանում հեղինակի հոգևոր արժանիքները: Ստեղծագործությունն ինքնին, իր բուն կոչից անկախ, հղկում է, ազնվացնում ու նրբացնում հոգին, գեղեցիկի ու լավի ծարավով ոգեկոչում այն: Տեղի է ունենում **երկուստեք ծնունդ.** եթե հեղինակը, պատկերավոր ասած, երկնում, ստեղծում է իր երկը, ապա երկն էլ, իր հերթին, խմորվելու և ձև ու կերպարանք առնելու ողջ ժամանակամիջոցում ծնում է հեղինակին:

Այսօր, հատկապես բանաստեղծներս, մի առանձին գորովանքով ենք ձեռքներս առնում գիտական կոմունիզմի հիմնադիրների այս յուրահատուկ կենսապատումը... Գորովանքով, նաև հպարտությամբ, որովհետև Կարլ Մարքսի և Ֆրիդրիխ Էնգելսի՝ իբրև մեծ անհատականությունների, ձևավորման ու հոգևոր հարստացման գործում նշանակալի է եղել նրանց գրական որոնումների ու ստեղծագործական ինքնադրսևորման դերը:

Ստեղծագործական ինքնադրսևորում, որ հավերժական փոթորկի տարերքում նրանց մկրտելուց հետո տարավ վեհ ու անձնուրաց ինքնայրումի՝ հանուն մարդկության բարօրության:

**ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ**

Հանձնված է շարվածքի՝ 19.04.88 թ.: Ստորագրված է տպագրության՝ 23.05.88 թ.: ՎՖ 03160
Ֆորմատ՝ 70×108 1/16, Տպագրություն՝ բարձր, 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.
Տպաքանակը՝ 16332, Պատվեր՝ 765:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան-23, Օրջոնիկիձեի պողոտա № 2: